# «Տրուլոս եւ Կրեսիդա»

“Troilus and Cressida”

Ուիլյամ Շեքսպիրի

[1602]

*Թարգմանությունը՝ Լիլիթ «Բաբա» Եազյանի [1978]*

“They say he is a very man, per se, and stands alone.”
“So do all men, unless they are drunk, sick or have no legs. ”

# DRAMATIS PERSONAE

PRIAM, King of Troy
HECTOR
TROILUS
PARIS
DEIPHOBUS
HELENUS
MARGARELON, a bastard son of Priam
AENEAS
ANTENOR
CALCHAS, a Trojan priest, taking part with the Greeks
PANDARUS, uncle to Cressida
AGAMEMNON, the Greek general
MENELAUS, his brother
ACHILLES
AJAX
ULYSSES
NESTOR
DIOMEDES
PATROCLUS
THERSITES, a deformed and scurrilous Greek
ALEXANDER, servant to Cressida
SERVANT to Troilus
SERVANT to Paris
SERVANT to Diomedes
HELEN, wife to Menelaus
ANDROMACHE, wife to Hector
CASSANDRA, daughter to Priam, a prophetess
CRESSIDA, daughter to Calchas
Trojan and Greek Soldiers, and Attendants

## ACT I. SCENE I.
Troy. Before Priam's Palace. Troilus, armed, and Pandarus, not armed, enter.

### TROILUS.
Կանչիր ծառայիս։ Ուզում եմ հանել զէնք ու զրահս, ես ինչպէ՞ս կռուեմ տրովադայի պարիսպներից դուրս, երբ որ այսպիսի դաժան կռիւ է բորբոքուել իմ մէջ։ Թող այն տրոյացին ռազմի դաշտ մեկնի, ով ինքն է իշխում իր սրտի վրայ, տրուլոսն, աւա՜ղ, տէր չէ իր սրտին։

### PANDARUS.
Միթէ՞ չես կարող այս գործը շտկել։

### TROILUS.
Յոյներն ուժեղ են, ճարպիկ, համարձակ, սաստիկ մոլեգին՝ իրենց քաջութեամբ, իսկ ես աւելի թոյլ եմ ու տկար, քան կնոջ արցունքը, աւելի հնազանդ, քան քունն իրիկուայ, աւելի յիմար, քան թէ տգէտը, աւելի վախկոտ, քան թէ աղջկայ երկիւղը մթնում, աւելի անփորձ, քան թէ երեխան։

### PANDARUS.
Դե՛հ, լաւ, այս մասին քեզ հետ խօսել եմ բաւականին։ Գալով ինձ՝ ես այլեւս չեմ խառնուի այս գործին։ Ով ուզում է կարկանդակ ուտել, նա պէտք է սպասի, մինչեւ որ ալիւրը աղան։

### TROILUS.
Միթէ՞ չեմ սպասել։

### PANDARUS.
Այո՛, աղալուն սպասել ես, բայց պէտք է սպասես, մինչեւ որ ալիւրը մաղեն։

### TROILUS.
Միթէ՞ չեմ սպասել։

PANDARUS.
Այո՛, սպասել ես մաղելուն, բայց պէտք է սպասես նաեւ խմորին։

TROILUS.
Միթէ՞ չեմ սպասել։

PANDARUS.
Այո՛, դրան էլ ես սպասել։ Բայց պէտք է խմորը հունցել, վառարանը փայտ դնել, կարկանդակը դնել կրակի վրայ, թողնել, որ սառչի, թէ ոչ՝ շուրթերդ կ՝այրես։

TROILUS.
Համբերութիւնը նոյն ինքն աստուած է, բայց հազիւ թէ նա կարող է տանել վիշտը ինձ նման։ Երբ ես նստում եմ ծեր պրիամոսի ճոխ սեղանի շուրջ, ինձ է յայտնւում մտքերիս թեւով չքնաղ կրեսիդան, ես՝ դաւաճանս, չեմ կարողանում խոյս տալ նրանից։

PANDARUS.
Այո՛, նա երէկ գիշեր աւելի գեղեցիկ էր, ոչ մի անգամ չէի տեսել նրան այսպէս։ Նրա նման կին աշխարհում չկայ։

TROILUS.
Ա՛խ, նրա մասին քեզ շատ եմ պատմել։ Իմ հառաչանքից սիրտս է ծուատւում, գուցէ իմ հայրը կամ թէ հեկտորը իմ վիշտը չզգան, որ թաքցնում եմ ժպիտիս ծալքում. այսպէս արեւն է իր վառ շողերով ամպը կլանում։ Բայց, աւա՛ղ, վիշտը, որ քօղարկւում է խաբուսիկ ժպիտով, բախտի է նման. փայլում է, շողում եւ յանկարծ մթնում տխրութեան փոխւում։

PANDARUS.
Թող նրա մազերը մի քիչ աւելի սեւ չլինեն, քան հեղինէինը։ Կարիք էլ չկայ այս կանանց իրար համեմատել։ Բայց, գալով ինձ, նա իմ ազգականն է, եւ ես չէի

ուզենայ, ինչպէս ասում են, նրան գովել։ Բայց կ՝ուզէի, որեւէ մէկը ինձ նման երէկ լսէր, թէ նա ինչպէս էր խօսում։ Ես, ի հարկէ, չեմ վատաբանում Ձեր քրոջ՝ կասանդրայի խելքը, բայց։

TROILUS.

Օ՛, իմ պանդարոս, ես ասում եմ քեզ, քեզ, իմ պանդարոս։ Երբ ասում եմ քեզ, որ իմ յոյսերը թաղել եմ ընդմիշտ, մի պատասխանիր, թէ ինչ խորութեամբ թաղուած են նրանք։ Ես ասում եմ քեզ, որ նրա սիրուց խելագարւում եմ, իսկ դու բաց սրտիս վէրքն ես քրքրում նրա աչքերով, նրա մազերով, նրա այտերով, նրա քայլուածքով ու նրա Ձայնով։ Օ՛, դու մի խօսիր նրա գեղեցիկ Ձեռքերի մասին, որոնց մօտ ճերմակ իրերն են դառնում սեւաթոյր մելան՝ մեղադրելով սեւութիւնն իրենց։ Այդ Ձեռքերի մօտ կարապի փետուրն աւելի կոշտ է, քան հողագործի ափը կոշտացած, նրանք քնքուշ են, ինչպէս շունչն հովի։ Եւ դու այս ամէնն ասում ես այնպէս ուղղամտօրէն, ինչպէս ասում եմ՝ սիրում եմ նրան։ Բայց իւրաքանչիւր իմ վէրքի վրայ ոչ թէ դնում ես իւղ կամ բալասան, այլ սիրոյ դանակ։

PANDARUS.

Ես ասում եմ ոչ աւելի, քան ճշմարտութիւնը։

TROILUS.

Բայց չես ասում ողջ ճշմարտութիւնը։

PANDARUS.

Երդւում եմ այլեւս չխառնուել այդ գործին։ Թող կրեսիդան լինի այնպիսին, ինչպէս որ կայ։ Գեղեցիկ է՝ աւելի լաւ իր համար, գեղեցիկ չէ՝ իր սեփական Ձեռքի տակ սիրունանալու միջոցներ ունի։

TROILUS.

Դեհ, լաւ, պանդարոս, բարի պանդարոս։

PANDARUS.

Աշխատանքիս դիմաց ես արդէն վարձատրուեցի. նրա համար՝ քո յանդիմանանքով, քեզ համար՝ նրա յանդիմանանքով։ Ես վազ եմ տալիս մի կողմից միւս կողմը, բայց մի փոքրիկ շնորհակալութիւն ասող չկայ։

TROILUS.

Ի՞նչ, դու բարկանո՞ւմ ես, պանդարոս։ Ե՞ս եմ բարկութեանդ պատճառը։

PANDARUS.

Որովհետեւ նա իմ ազգականն է, եւ ես չեմ կարող ասել, որ կրեսիդան գեղեցիկ է, ինչպէս հեղինէն։ Եթէ նա չլինէր իմ արիւնակիցը, ես կ՝ասէի, որ ուրբաթ օրն էլ թող նա գեղեցիկ լինէր, ինչպէս հեղինէն՝ կիրակի։ Բայց իմ ի՞նչ գործն է։ Ուզում է՝ սեւուկ մի արաբ լինի։ Ինձ համար նոյնն է։

TROILUS.

Ես ասում եմ, որ նա գեղեցիկ չէ՞։

PANDARUS.

Ինձ համար նոյնն է՝ ասում ես, թէ ոչ։ Յիմար է, որ նա այստեղ է մնում առանց հօր։ Թող գնայ յոյների մօտ։ Երբ յաջորդ անգամ հանդիպեմ նրան, կ՝ասեմ այս մասին։ Ես այլեւս չեմ խառնուի այս գործին։

TROILUS.

Պանդարո՛ս։

PANDARUS.

Ինչի՞ համար։

TROILUS.

Սիրելի պանդարո՛ս։

PANDARUS.
Խնդրում եմ այլեւս այս մասին չխօսել ինձ հետ։ Ես ուզում եմ այս բոլորը այնպէս մոռանալ, ինչպէս որ գտայ։ Վե՛րջ։

[As Pandarus exits the War drums sound an alarm.]

TROILUS.
Լռէ՛ք, բիրտ Ձայներ, լռէ՛ք, անիծեալ ճիչ ու աղաղակ, յիմարացնում էք երկու կողմին էլ։ Հեղինէն, իրաւ, կին է գեղեցիկ, քանզի ամէն օր այդ ճշմարտութիւնն արեամբ էք գրում։ Չեմ կարող կռուել այս բանի համար. չափազանց մի թոյլ պատճառ է կանգնում իմ սրի դիմաց։ Բայց, իմ պանդարո՛ս։ Օ՛, դուք, աստուածներ, ինչո՞ւ էք այսպէս դժբախտիս տանջում։ Աւա՛ղ, չեմ կարող առանց պանդարոսի նրա մօտ գնալ, բայց նա յամառ է, խիստ անդրդուելի, ինչպէս ողջախոհ իմ կրեսիդան։ Ասա՛, ապոլլոն, յանուն դափնէի, ում որ սիրում ես, ի՞նչ է կրեսիդան, ի՞նչ է պանդարոսը, ի՞նչ ենք բոլորս։ Նրա անկողին հողն է հնդկական, ուր նա փայլում է որպէս մարգարիտ։ Իմ, մեր իլիոնի ու նրա միջեւ ընկած է ասես վայրի մի հեղեղ, ա՛խ, մենք բոլորս վաճառական ենք, իսկ պանդարոսը՞։ Մեր աղօտ յոյսն է, մեր ուղեկիցը ու մեր մակոյկը։

[More Battle drums. Aeneas enters.]

AENEAS.
Արքայազն, ինչո՞ւ կռուի դաշտում չէք։

TROILUS.
Քանզի այնտեղ չեմ։ Պատասխանն, անշուշտ, եղաւ կանացի, կնիկութիւնն է այնտեղից տուն գալ։ Բայց կռուից ի՞նչ լուր։

AENEAS.
Պարիսն, ասում են, տուն վերադարձաւ, վիրաւորուած է։

TROILUS.
Ո՞վ վիրաւորեց նրան, Էնէաս։

AENEAS.
Մենելաոսը։

TROILUS.
Թող արիւնն հոսի. բայց սա սպի է արհամարհանքին. մենելաոսի եղջիւրն է խոցել պարիսին ջահէլ։

[War drums sound an alarm yet again.]

AENEAS.
Լսո՞ւմ ես, թէ ինչ խնջոյք են սարքել մեր քաղաքից դուրս։

TROILUS.
Կը նախընտրէի խնջոյքը տանը, ուր կարենալն ու հզօրութիւնն իրար Զուլուէին. գնո՞ւմ ես այնտեղ։

AENEAS.
Այո՛, փութանոք, ինչպէս թռչող նետ։

TROILUS.
Սպասի՛ր, ես էլ գալիս եմ քեզ հետ։ [Exits.]

][][

ACT I. SCENE II.
Troy. Street. Cressida enters with her servant, Alexander.

CRESSIDA.

Ովքե՞ր էին, որ մոտիկից անցան։

ALEXANDER.
Թագուհի հեկաբեն ու հեղինէն։

CRESSIDA.
Ո՞ւր էին գնում։

ALEXANDER.
Բերդն արեւելեան, որի բարձունքը իշխում է ամբողջ հովիտի վրայ։ Նրանք ուզում են կռիւը դիտել։ Հեկտորը՝ նոյնիսկ խիստ համբերատար, ասում են, սաստիկ յուզուած էր եղել. յանդիմանելով անդրոմաքէին՝ ծեծել էր նոյնիսկ իր զինակրին, արեւից առաջ, հողագործի պէս, զարթնել էր քնից, կապել զէնք-զրահն եւ սլացել էր ռազմի դաշտը, ուր ամէն ծաղիկ, ցօղ-արցունքն աչքին, որպէս մարգարէ կանխատեսում էր, թէ նրա զայրոյթն ինչ էր հնձելու։

CRESSIDA.
Ինչո՞ւ էր հեկտորն այսպէս զայրացել։

ALEXANDER.
Լուրեր են շրջում, որ յոյների մէջ կայ մի քաջ ռազմիկ՝ տրոյացու արեամբ, իբրեւ հեկտորի հօր քրոջ որդին է։ Անունը՝ այաքս։

CRESSIDA.
Բարի։ Իսկ յետո՞յ։

ALEXANDER.
Ասում են, որ իր նմանը չունի եւ թշնամու դէմ կանգնում է մենակ։

CRESSIDA.
Այսպէս են այն բոլոր տղամարդիկ, ովքեր չեն խմում, չեն հիւանդանում եւ առանց

ոտքի չեն։

ALEXANDER.
Այս մարդը, տիրուհի, գազաններից յափշտակել է նրանց բնաւորութիւնները. նա քաջ է, ինչպէս առիւծը, կոպիտ է, ինչպէս արջը, դանդաղաշարժ է, ինչպէս փիղը։ Նա մի մարդ է, որի մէջ բնութիւնն այնպէս է խճողել բնաւորութիւնները, որ նրա քաջութիւնը հասնում է յիմարութեան, իսկ յիմարութիւնը՝ ողջախոհութեան։ Նա առանց պատճառի մերթ տխրում է, մերթ ուրախանում։ Առաքինի է եւ արատներ ունի։ Նրա մէջ ամէն ինչ թարս ու շիտակ է։ Նա ասես լինի կաթուածահար բրիարեւսը, որն ունի հարիւր Ձեռք, բայց անգործութեան է մատնուած, կամ ասես լինի կոյր արգոսը, որ բազում աչքեր ունի, բայց չի տեսնում։

CRESSIDA.
Այս մարդը, որ միայն ժպիտս է շարժում, ինչպէ՞ս է զայրացրել հեկտորին։

ALEXANDER.
Ասում են, որ նա երէկ մարտում գետին է զարնել հեկտորին։ Ամօթից ու խայտառակութիւնից հեկտորը ո՛չ ուտում է, ո՛չ քնում։

CRESSIDA.
Ո՞վ է գալիս։

ALEXANDER.
Տիրուհի, Ձեր հօրեղբայրը՝ պանդարոսը։

[Pandarus enters.]

CRESSIDA.
Հեկտորը քաջ մարդ է։

ALEXANDER.
Ամենաքաջն ամբողջ աշխարհում, տիրուհի։

PANDARUS.
Ինչի՞ մասին էք խօսում։

CRESSIDA.
Բարի լոյս, հօրեղբայր պանդարոս։

PANDARUS.
Բարի լոյս, եղբօրորդու աղջիկ կրեսիդա։ Ինչի՞ մասին էք զրուցում։ Բարի լոյս, ալեքսանդր։ Ինչպէ՞ս է իմ եղբօրորդու աղջիկը։ Ե՞րբ ես եղել իլիոնում։

CRESSIDA.
Այսօր առաւօտեան, հօրեղբայր։

PANDARUS.
Ինչի՞ մասին էիք խօսում, երբ ես եկայ։ Երբ իլիոն գնացիր, հեկտորը արդէն կապե՞լ էր իր զէնքն ու զրահը ու քեզնից առա՞ջ էր դուրս եկել։ Հեղինէն ոտքի վրա՞յ էր։

CRESSIDA.
Հեկտորը գնացել էր, իսկ հեղինէն դեռ չէր արթնացել։

PANDARUS.
Ուրեմն հեկտորը կանուխ էր արթնացել։

CRESSIDA.
Հէնց այս մասին էլ զրուցում էինք, մէկ էլ խօսում էինք, թէ նա ինչպէս էր զայրացել։

PANDARUS.
Զայրացե՞լ էր նա։

CRESSIDA.
Այսպէս ես ասում։

PANDARUS.
Իսկապէս նա զայրացել էր։ Ես գիտեմ նաեւ պատճառը։ Նա այսօր ամէն ինչ կ՝աւերի իր շուրջը։ Ես այդ բանը կ՝ասեմ նրանց։ Տրուլոսը նրանից պակասը չէ։ Թող զգուշանան տրուլոսից։ Այս բանը կարող եմ նրանց էլ ասել։

CRESSIDA.
Ի՞նչ, նա է՞լ էր զայրացել։

PANDARUS.
Ո՞վ, տրուլոսը՞։ Տրուլոսը հեկտորից լաւն է։

CRESSIDA.
Օ՛, իւպիտեր, ոչ մի համեմատութիւն։

PANDARUS.
Ի՞նչ։ Ոչ մի համեմատութի՞ւն տրուլոսի ու հեկտորի միջեւ։ Տղամարդ տեսնելիս կարողանո՞ւմ ես ճանաչել նրան։

CRESSIDA.
Եթէ նրան առաջուց տեսել եմ եւ ճանաչում եմ։

PANDARUS.
Հէնց այդ էլ ես եմ ասում՝ տրուլոսը տրուլոս է։

CRESSIDA.
Դու կրկնում ես իմ խօսքերը։ Ես համոզուած եմ, որ նա հեկտոր չէ։

PANDARUS.
Ո՛չ էլ հեկտորն է տրուլուս։

CRESSIDA.
Ճշմարտութիւն կը լինի ասել, որ նրանցից ամէն մէկն ինքն է։

PANDARUS.
Աւա՜ղ, խեղճ տրուլուս։ Երանի՜ նա ինքը լինէր։

CRESSIDA.
Նա ի՞նքն է։

PANDARUS.
Եթէ քո ասածը ճիշտ լինէր, ես ոտաբոբիկ մինչեւ հնդկաստան կը գնայի։

CRESSIDA.
Այնուամենայնիւ, հեկտոր չէ։

PANDARUS.
Օ՜, ես կ՝ուզէի, որ նա ինքը լինէր։ Դեհ, լաւ, երկնքում աստուած կայ։ Եւ, ի հարկէ, ժամանակը ամէն ինչ ցոյց կը տայ։ Ա՜խ, տրուլուս, մի քիչ համբերիր։ Ես կ՝ուզէի, որ իմ սիրտը բաբախէր նրա կրծքի տակ։ Ո՜չ, հեկտորը ոչ մի դէպքում տրուլուսից լաւ չէ։

CRESSIDA.
Դեհ, լաւ, ների՛ր ինձ։

PANDARUS.
Նա, ամէնից առաջ, տարիքով մեծ է։

CRESSIDA.
Ների՛ր ինձ, ների՛ր ինձ։

PANDARUS.
Տրուլոսը դեռ ջահէլ է։ Ի՞նչ պիտի ասես, երբ նա հասնի հեկտորի տարիքին։ Հիմա էլ հեկտորը նրա խելքը չունի։

CRESSIDA.
Նա դրա կարիքը չունի, եթէ սեփական խելք ունի։

PANDARUS.
Ուրիշ արժանիքներ էլ չունի։

CRESSIDA.
Հոգ չէ։

PANDARUS.
Նրա գեղեցկութիւնը չունի։

CRESSIDA.
Նրա գեղեցկութիւնը նրան Ձեռ է տալիս։

PANDARUS.
Դու ոչինչ չես հասկանում, եղբօրորդու աղջիկ։ Վերջերս հեղինէն ինքն էլ էր ասում, որ տրուլոսը հաճելի։ Թուխ է, այո՛, նա թուխ։ Ես խոստովանում եմ, որ թուխ է, բայց ոչ բոլորովին։

CRESSIDA.
Դէ, լաւ, թուխ է։

PANDARUS.
Ճշմարիտն ասած՝ թուխ է եւ ո՛չ թուխ։

CRESSIDA.
Ճշմարիտն ասած՝ դա ճշմարիտ է եւ ո՛չ ճշմարիտ։

PANDARUS.
Հեղինէն խոստովանում էր, որ հեկտորի երեսի գոյնը աւելի պայծառ է, քան պարիսինը։

CRESSIDA.
Պարիսի գոյնն էլ բաւականին պայծառ է։

PANDARUS.
Այո՛, այսպէս է։

CRESSIDA.
Ուրեմն, տրոյլոսը չափազանց կարմիր է։ Եթէ հեղինէն էր ասում, որ նրա գոյնը աւելի պայծառ է, քան պարիսինը, նշանակում է նա գովելի է։ Առանց այն էլ՝ հեղինէն այնպիսի ոսկի լեզու ունի, որ նա տրոյլոսին կը գովի նրա պղնձեայ քթի համար։

PANDARUS.
Երդւում եմ, որ հեղինէն տրոյլոսին աւելի է սիրում, քան պարիսին։

CRESSIDA.
Ուրեմն, հեղինէն թեթեւսոլիկ կին է։

PANDARUS.
Ի՜նչ ես ասում, հեղինէն սիրում է նրան։ Վերջերս հեղինէն գնացել է նրա մօտ, երբ նա կանգնած է եղել պատուհանի մօտ։ Իսկ դու գիտե՞ս, որ նրա կզակի վրայ երեք կամ չորս մազ է բուսել։

CRESSIDA.
Գինետան մանչուկն էլ իր իմացած թուաբանութեամբ կարող է արագ հաշուել այդ մազերը։

PANDARUS.
Նա շատ ջահէլ է, բայց արդէն երեք ֆունտ աւելի է բարձրացնում, քան նրա եղբայրը՝ հեկտորը։

CRESSIDA.
Այսքան ջահէլ եւ այսքան բարձրացնո՞ւմ է։

PANDARUS.
Բայց ես քեզ կ՝ապացուցեմ, որ հեղինէն սիրում է նրան։ Հեղինէն մօտեցել է նրան եւ իր սպիտակ ձեռքը հպել է նրա երկճիւղանի կզակին։

CRESSIDA.
Օ՛, իւնո, գթա մեզ։ Ո՞վ է ճեղքել նրա կզակը։

PANDARUS.
Դու մոռացել ես, որ նրա կզակը փոսիկ ունի։ Ես կարծում եմ, որ նրա ժպիտը նրան դարձնում է աւելի գեղեցիկ, քան որեւէ մէկին ամբողջ փռիւգիայում։

CRESSIDA.
Օ՛, նա ժպտում է հաճելիօրէն։

PANDARUS.
Այսպէս, չէ՞։

CRESSIDA.
Օ՜, այո՜, այնպէս, ինչպէս աշնան ամպը։

PANDARUS.
Լաւ, դե՛հ, լաւ։ Բայց եթէ ուզում ես, քեզ ապացուցեմ, որ հեղինէն սիրում է տրուլոսին։

CRESSIDA.
Տրուլոսի՞ն. ապացուցիր։

PANDARUS.
Տրուլոսի՞ն, ինչո՞ւ։ Տրուլոսը նրան գնահատում է ոչ աւելի, քան ես՝ լխկած Ձուն։

CRESSIDA.
Եթէ դու լխկած Ձուն սիրում ես այնպէս, ինչպէս սիրում ես դատարկ գլուխը, ապա ստիպուած կը լինես ուտել կպեճով ճտեր։

PANDARUS.
Ծիծաղս գալիս է, երբ յիշում եմ, թէ հեղինէն ինչպէս է խտուտ տուել նրա կզակը։ Իսկապէս նա սքանչելի սպիտակափայլ Ձեռք ունի, ես պէտք է խոստովանեմ։

CRESSIDA.
Ասում ես՝ առանց խղճի խայթ զգալո՞ւ։

PANDARUS.
Եւ յանկարծ հեղինէն նրա կզակի վրայ նշմարում է մի սպիտակ մազ։

CRESSIDA.
Աւա՛ղ, խեղճ կզակ։ Ամէն մի գորտնուկ հարուստ է նրանից։

PANDARUS.
Ինչքա՜ն ծիծաղեցին։ Թագուհի հեկաբեն այնպէս ծիծաղեց, որ աչքերը գլորուելով դուրս թռան։

CRESSIDA.
Ինչպէս ջրաղացի քարը։

PANDARUS.
Եւ կասանդրան ծիծաղեց։

CRESSIDA.
Բայց նրա աչքերի մէջ կրակ չկար։ Նրա աչքերն է՞լ դուրս թռան։

PANDARUS.
Եւ հեկտորը ծիծաղեց։

CRESSIDA.
Բայց ինչո՞ւ էին այսպէս ծիծաղում։

PANDARUS.
Պատճառը սպիտակ մազն էր, որ հեղինէն նշմարել էր տրուլոսի կզակի վրայ։

CRESSIDA.
Եթէ կանաչ մազ էլ հեղինէն նշմարած լինէր, ես նոյնպէս կը ծիծաղէի։

PANDARUS.
Նրանց ծիծաղեցրել է ոչ այնքան մազը, որքան նրա պատասխանը։

CRESSIDA.
Իսկ ի՞նչ էր պատասխանել։

PANDARUS.
*«Գիտես, ասել էր հեղինէն, քո կզակի վրայ յիսունմէկ մազ կայ, եւ դրանցից միայն մէկն է սպիտակ»։*

CRESSIDA.
Այսքանը՞։

PANDARUS.
Ոչ, տրոյլոսը պատասխանել է։ *«Յիսունմէկ մազից մէկը սպիտակ է. սպիտակը հայրս է, իսկ միւսները՝ նրա որդիները»։ «Օ՜, յուպիտեր, բացականչել է հեղինէն, նրանցից ո՞րն է իմ ամուսինը՝ պարիսը»։ «Երկճիւղանին, պատասխանել է տրոյլոսը, պոկի՛ր եւ տուր նրան»։* Այս խօսքի վրայ բոլորը ծիծաղից ջարդւում են։ Հեղինէն կարմրում է, պարիսը՝ կատաղում։ Բայց միւսներն էլ այնպէս են ծիծաղում, որ քիչ է մնում տրաքուեն։

CRESSIDA.
Հերիք է, թէ չէ այս դատարկ բանից համբերութիւնս էլ կը տրաքուի։

PANDARUS.
Լաւ, եղբօրորդու աղջիկ։ Երէկ քեզ ինչ-որ բան եմ ասել։ Մտածի՛ր այդ մասին։

CRESSIDA.
Մտածում եմ։

PANDARUS.
Արեւս վկայ, ինչ որ ասում եմ, ճշմարտութիւն է, տրոյլոսը քեզ համար այնպէս է լաց լինում, կարծես ապրիլին է ծնուել։

CRESSIDA.
Ուրեմն, ես նրա արցունքներից կը բացուեմ, ինչպէս եղինջն է բացւում մայիսին։

[War drums sound an alarm.]

PANDARUS.
Լսո՞ւմ ես, նրանք վերադառնում են ռազմի դաշտից։ Ե՛կ, մի կողմ քաշուենք ու այնտեղից նայենք, թէ նրանք ինչպէս են գնում դէպի իլիոն։ խնդրում եմ, այս կողմ արի, եղբօրորդու աղջիկ, սիրելի՛, չքնա՛ղ կրեսիդա։

CRESSIDA.
Եթէ հաճելի է քեզ։

PANDARUS.
Այստե՛ղ, այստե՛ղ, այստեղ հիանալի է։ Այստեղից ամէն ինչ կարող ենք հրաշալիօրէն դիտել։ Երբ նրանք անցնեն մեր մօտից, ես նրանց բոլորի անունները քեզ կ՝ասեմ։ Բայց, խնդրում եմ, յատկապէս ուշադրութիւն դարձրու տրուլոսին։

CRESSIDA.
Այսպէս բարձր մի խօսիր։

[Aeneas passes by.]

PANDARUS.
Սա Էնէասն է։ Միթէ՞ կտրի՛ճ չէ։ Տրոյայի ծաղիկներից է։ Բայց ուշադրութիւն դարձրու տրուլոսին։

[Antenor passes by.]

CRESSIDA.
Սա ո՞վ է։

PANDARUS.
Սա անթենորն է։ Նա, կարող եմ ասել, սուր լեզու ունի, բայց բարի մարդ է։ Տրոյայի խելօք գլուխներից է։ Յատուկ անձնաւորութիւն է։ Բայց ինչո՞ւ չի գալիս տրուլոսը։ Ես քեզ ցոյց կը տամ նրան։ Եթէ նա ինձ նկատի, կը տեսնես, թէ ինչպէս գլխով նշան կ՝անի ինձ։

CRESSIDA.
Գլխո՞վ նշան կ՝անի։

PANDARUS.
Այո՛, կը տեսնես։

CRESSIDA.
Եթէ նշան անի, հարուստը աւելի կը հարստանայ։

[Hector passes by.]

PANDARUS.
Սա հեկտորն է։ Նայի՛ր, նայի՛ր նրան։ Ի՜նչ տղամարդ է։ Գնա՛ քո ճանապարհով, հեկտոր։ քա՛ջ մարդ է, եղբօրորդու աղջիկ։ Օ՛, քաջ հեկտոր։ Նայիր, ի՜նչ կեցուածք ունի։ Ի՜նչ դէմք ունի։ Հրաշալի՛ մարդ է։

CRESSIDA.
Օ՛, քաջ մարդ է։

PANDARUS.
Այնպէս չէ՞, մարդու սիրտը բարութիւն է լցնում։ Նայիր նրա սաղաւարտին։ Հարուածի հետքեր կան վրան։ Տեսնո՞ւմ ես, կատակ բան չէ՝ սրի հետքեր են։

CRESSIDA.
Սրի՞ հետքեր։

PANDARUS.
Այո՛, սրի՛ հետքեր։ Նա ոչ մի բանից չի վախենում։ Թէկուզ սատանան յարձակուի նրա վրայ, նա չի վախենայ։ Երդւում եմ աստծով, մարդու սիրտը բարութեամբ է լցւում, երբ նայում է նրան։ Բայց ահա գալիս է պարիսը։

[Paris passes by.]

PANDARUS [cont.]
Նայի՛ր, եղբօրորդու աղջիկ, միթէ՞ վայելչակազմ տղամարդ չէ։ Այնպէս չէ՞։ քաջ է, ո՞վ էր ասում, թէ նա այսօր վիրաւորուած տուն է վերադարձել։ Նա վիրաւոր չէ։ Հիմա հեղինէն կ՝ուրախանայ։ Այժմ ինչպէս կ՝ուզէի տեսնել տրուլոսին։ շուտով կը տեսնես տրուլոսին։ Անցնում է հելենոսը։

CRESSIDA.
Սա ո՞վ է։

PANDARUS.
Հելենոսն է։ Զարմանում եմ, թէ ինչու չի երեւում տրուլոսը։ Այո՛, սա հելենոսն է։ Կարծեմ նա այսօր ռազմի դաշտ չի մեկնել։ Այո՛, հելենոսն է։

CRESSIDA.
Հելենոսը չի՞ կարող կռուել, հօրեղբայր։

PANDARUS.
Հելենոսը՞։ Ո՛չ։ Այո՛։ Բայց զարմանում եմ, թէ որտեղ է տրուլոսը։ Չե՞ս լսում, թէ ինչպէս է ժողովուրդը բղաւում՝ տրուլո՛ս։ Չէ՞ որ հելենոսը քուրմ է։

CRESSIDA.
Իսկ նա ո՞վ է, որ սողոսկում է այնտեղ։

[Troilus passes by.]

PANDARUS.
Որտե՞ղ։ Այնտե՞ղ։ Օ՜, դեյֆոբոսն է։ Ո՜չ, ո՜չ, տրոյլոսն է։ Ի՜նչ տղամարդ է, եղբօրորդու աղջիկ։ Հը՜մ։ քաջ տրոյլոսն է, ասպետութեան արքայազն։

CRESSIDA.
Սուո՜ւս, ամաչիր, սո՜ւս։

PANDARUS.
Նայիր նրան, ուշքդ նրա կողմ դարձրու։ Օ՜, քաջ տրոյլոս։ Ապա մի լաւ նայիր նրան, եղբօրորդու աղջիկ։ Տեսնո՞ւմ ես, արիւնով է ներկուած նրա սուրը, իսկ սաղաւարտը աւելի շատ հարուածի հետքեր ունի, քան հեկտորինը։ Ինչպիսի՜ հայեացք, ինչպիսի՜ քայլուածք։ Օ՜, սքանչելի երիտասարդ է։ Հազիւ քսաներեք տարեկան լինի։ Գնա քո ճանապարհով, տրոյլոս, գնա քո ճանապարհով։ Եթէ ես ունենայի նազելի մի քոյր կամ աստուածակերպ դուստր, կը թողնէի, որ նա ընտրութիւն կատարէր։ Սքանչելի՜ տղամարդ է։ Պարիսը՞։ Պարիսը նրա համեմատ կեղտ է։ Եւ հեղինէն, երաշխաւորում եմ, մի աչքը կը փոխանակէր նրա հետ։

[Ordinary Soldiers pass by.]

CRESSIDA.
Իսկ սրանք ովքե՞ր են։

PANDARUS.
Էշեր, յիմարներ, տխմարներ, թեփեր ու դարմաններ, դարմաններ ու թեփեր։ Ես կ՝ապրէի ու կը մեռնէի՝ աչքս տրոյլոսին յառած։ Էլ նայելու բան չմնաց, էլ մի նայիր։ Արծիւները թռան-գնացին, հիմա թռչում են ագռաւներն ու ճայեկները,

ճայեկներն ու ազռաւները։ Եթէ ես ուզենայի որեւէ մէկին նմանուել, ապա կը նախընտրէի տրուլոսին։ Նա աւելի լաւն է, քան ագամեմնոնը եւ բոլոր յոյները։

CRESSIDA.
Յոյների մէջ մի մարդ կայ, անունը՝ աքիլլես։ Նա աւելի լաւն է, քան տրուլոսը։

PANDARUS.
Աքիլլեսը՞։ Թի՛ւ, սայլապան է, բեռնակիր եւ մի մեծ ուղտ։

CRESSIDA.
Լաւ, լաւ։

PANDARUS.
Ինչո՞ւ։ ճաշակ չունե՞ս։ Աչք չունե՞ս։ Գիտե՞ս, թէ ինչ է տղամարդը։ Միթէ՞ ազգատոհմը, գեղեցկութիւնը, բարի տեսքը, խօսակցութիւնը, կրթութիւնը, ազնուութիւնը, առաքինութիւնը, ջահէլութիւնը, շռայլութիւնը այն աղն ու համը չեն, որ համովցնում են տղամարդուն։

CRESSIDA.
Այո՛, եթէ տղամարդը կարկանդակի խորիզ է։ Բայց այս դէպքում էլ չթուարկեցիր բոլոր արժանիքները։

PANDARUS.
Ինչ զարմանալի աղջիկ ես. պատասխաններիցդ մարդ գլուխ չի հանում։ Չես կարողանում բառը տեղը դնել։

CRESSIDA.
Բառը դնում եմ իմ մէջքի վրայ, որ պաշտպանեմ փորս, իմ խելքի վրայ, որ պաշտպանեմ ճարտարութիւնս, իմ գաղտնապահութեան վրայ, որ պաշտպանեմ պարկեշտութիւնս, իմ դիմակի վրայ, որ պաշտպանեմ գեղեցկութիւնս, քեզ վրայ, որ պաշտպանես այս բոլորը։ Ահա այն բառերը, որոնց վրայ հենւում եմ

պատասխանելիս։ Ես հազար պահապան ունեմ։

PANDARUS.
Չե՞ս կարող մէկի անունը ասել։

CRESSIDA.
Ոչ։ Աչքս վրադ կը պահեմ, դա ամենակարեւորն է։ Եթէ ես չեմ կարող խանգարել նրան, ով վնաս է հասցնում ինձ, ապա թոյլ չեմ տայ, որ նա շաղակրատի։ Իսկ եթէ վնասը մի մեծ բան չէ, ոչ ոք էլ չի խօսի։

PANDARUS.
Ուրի՛շն ես, հա՛։

[The Servant of Trulus enters.]

SERVANT.
Պարոն, իմ տէրն ուզում է անմիջապէս Ձեզ հետ խօսել։

PANDARUS.
Որտե՞ղ է նա։

SERVANT.
Ձեզ մօտ, Ձեր սեփական տանը։ Նա այնտեղ հանում է իր զէնք-զրահը։

PANDARUS.
Մանչուկ, նրան ասա, որ գալիս եմ։

[Servant exits.]

PANDARUS [cont.]
Մնա՛ս բարով, եղբօրորդու աղջիկ։

CRESSIDA.
Մնա՛ս բարով, հօրեղբայր։

PANDARUS.
Ես նորից կը գամ քեզ մօտ, եղբօրորդու աղջիկ։

CRESSIDA.
Իսկ ի՞նչ ես բերելու, հօրեղբայր։

PANDARUS.
Տրուլոսից լուր։

CRESSIDA.
Այդ լուրով կ՝ապացուցես, որ դու կաւատ ես։

[Pandarus exits.]

CRESSIDA [cont.]
Սիրոյ արցունքնե՛ր, խօսքե՛ր, երդումնե՛ր ու տառապանքնե՛ր ինձ է մատուցում ուրիշի համար պանդարոսը ծեր, բայց ես տեսնում եմ տրուլոսի մէջ հազար փառք ու փայլ, քան թէ կարող է նրա գովեստի հայելին ցոյց տալ։ Կինն հրեշտակ է, քանի դեռ նրա սէրն են երազում, տիրեցին նրան՝ հանգչում է հոգու հրճուանքն անզուսպ, սիրեցեալ կինը պէտք է իմանայ, որ տղամարդուն դեռ չնուաճուած՝ դեռ հեռւում անհաս սէրն է կախարդում, բաւ է՝ նուաճի իր երազանքի բարձունքը վսեմ, խամրում են արդէն կարօտեալ հոգու աղերսանք ու սէր։ Երբ տղամարդը հասնում է սիրուն՝ տէր է մշտարթուն, դեռ չնուաճած՝ աղերսանք ու լաց, սրբազան երդում։ Թէեւ իմ սրտում սէրս է զօրաւոր եւ խիստ անվարան, բայց իմ աչքերը երբեք ու երբեք չեն մատնի նրան։ [Exits.]

][][

## ACT I. SCENE III.

Grecian Camp. Before Agamemnon's tent. Agamemnon, Nestor, Ulysses, Diomedes, Menelaus and Sundry Riffraff enter.

### AGAMEMNON.

Ազնիւ իշխաններ, ի՞նչ վիշտ է, արդեօք, Ձեր գունատ դէմքը այսպէս պաշարել։ Ամէն առաջարկ, որ յոյսն է գծում, կարող է երբեմն այս երկրի վրայ համայնապարփակ ակնկալութիւնն յուսախաբ անել։ Մեծ աղէտները, խոչընդոտները ծնւում են աիեղ ճակատամարտի երակների մէջ, ինչպէս խիլերը, որ գոյանալով աւշանիւթերի խուռն բախումից՝ նեխում են առողջ սոճու իրանը՝ թեքելով նրան։ Այո՛, իշխաններ, նոր բան չէ բնաւ, որ մենք խաբուել ենք մեր յոյսերի մէջ. անցել է արդէն ուղիղ եօթ տարի, բայց դեռ կանգուն է պաշարուած տրոյան։ Ամէն մի խիզախ նախաձեռնութիւն, որ նկարուած է յիշողութեանս տախտակի վրայ, շեղուել է երբեմն իր ճանապարհից, չի Ձեւաւորել մտքի անմարմին, աննիւթ կերպարը, որ պատկերել է խորհող յղացումը։ Ինչո՞ւ, իշխաններ, Ձեր կորուստներից շիկնել էք այսպէս, ինչո՞ւ էք նրանց խայտառակութեան խօսքով յորջորջում, երբ փորձութեան է նրանց ենթարկել մեծ իւպիտերը, որպէսզի տեսնի Ձեր հաստատամիտ կայունութիւնը։ Այո՛, մետաղի ազնուութիւնը չես կարող զգալ, քանզի նոյն սիրով ճակատագիրն է նայում բոլորին. եւ ազգակից են դառնում իրար հետ քաջն ու վախկոտը, հանճարն ու խենթը, բամբակն ու քարը, բայց, երբ չի նայում ճակատագիրը հողմերի միջից, զանազանութեան սաստիկ զօրաւոր ու լայն հովհարը քշում-տանում է թեթեւ փրփուրը, եւ այն, ինչ ծանր է կամ թէ պիտանի, պահում է իրեն խիստ հարստացած առաքինութեամբ ու զօրութիւնով։

### NESTOR.

Հաւուր պատշաճի քո աստուածային գահը յարգելով, մեծ ագամեմնոն, նեստորը պէտք է շարունակի քո խօսքն իմաստուն։ ճակատագրի անակնկալներն իմաստուն մարդուն վախ չեն պատճառում։ Երբ ծովն է խաղաղ, ծանծաղագնաց փոքրիկ նաւերը փորձում են լողալ նրա համբերող լանջերի վրայ այս ազնուագոյն

մեծ նաւերի հետ։ Բաւ է բորէասն ահեղամռունչ բարկանայ սաստիկ հանդարտաբարոյ թետիսի վրայ, որ լեռնակուտակ ջրերն ակօսեն նաւերն ամրակող՝ ցատկելով խոնաւ, խենթ տարերքի մէջ, ինչպէս պերսեւսի նժոյգն սպիտակ, իսկ այն թուլակող, ժպիրի մակոյկը, որ յանդգնում է նրանց հետ մրցել, արդ ապաստան է փնտրում մի խորշում կամ բաժակաճառ ասում նեպտունին։ ճիշտ այդպէս բախտի փոթորիկներում զատւում է ստոյգ արիութիւնը անիրականից։ ճակատագրի փայլ ու շողի մէջ գոռեխն աւելի սարսափ է տածում հօտերի վրայ, քան վագրն ահեղ, բայց երբ որ ճեղքօղ-գազազած քամին ծունկի է բերում կնճռոտ կաղնուն, ճանճերն են թռչում դէպի ստուերը։ Մինչդեռ քաջերը՝ արթնացած դաժան մոլեգնութիւնից, համակրելով մոլեգնութեանը, անձնազոհութեամբ փականք են դնում շեշտակի տօնով խիստ յանդիմանող ճակատագրի Ձեռքերի վրայ։

## ULYSSES.

Դու, ագամեմնոն, որ հելլադայի ջիղն ու ոսկորն ես, դու, մեծ զօրավար, ում մէջ Ձուլուած են բոլորիս խոհերն ու խառնուածքը, լսիր, թէ ինչ է ոդիսեւսն ասում։ Նախ՝ մատուցում եմ արժանի գովեստ քեզ, ագամեմնոն, քո հզօր դիրքի ու փառքի համար, ապա՝ քեզ նեստոր, քո գերաշնորհ ծերութեան համար։ Օ՜, մեծ զօրավա՜ր, քո խօսքն իմաստուն պէտք է դրոշմէ աջն հելլադայի պղնձի վրայ, դու արծաթահեր, պատուելի նեստոր, այնպէս խօսեցիր, որ պէտք է գամես օդային կապով քո հմուտ լեզուին ականջը յոյնի։ Եւ թող այս կապը խիստ ամուր լինի, ինչպէս այն սռնին, որի վրայ էլ երկինքն է դառնում։ Եթէ հաճոյ է, խիզախ զօրավար եւ այր իմաստուն, լսիր, թէ ինչ է ոդիսեւսն ասում։

## AGAMEMNON.

Թող իթակէի արքան բարբառէ։ Մենք չենք սպասում, որ քո շուրթերը կարող են կրել անիմաստ մտքէր, ինչպէս չենք խորհում, որ թերսիդեսը բղջախոհ ու լիրբ, երբ իր դեղնաւուն ծնօտն է շարժում, կարող ենք լսել մտքէր իմաստուն կամ թէ պատգամներ։

ULYSSES.

Վաղուց կ՝աւերուէր տրոյան կանգուն, եւ մեծ հեկտորի սուրը կը զրկուէր իր քաջ տիրոջից, թէ չմատնուէր մեր իշխանութիւնն անհոգութեանը։ Նայիր՝ ինչպէս են կանգնել բացիբաց մեր վրանները մեր գործերի պէս։ Երբ չի բաղդատւում մեծ զօրավարը մեղուաբոյնի հետ, ուր հաւաքւում են խոտազօրները, չես կարող ասել, թէ քեզ ինչպիսի մեղր է սպասւում։ Բնական կարգը քօղարկուած է միշտ, անարժաններն են իրենց դիմակով դիտւում արժանի։ Ինքը՝ երկինքը, մոլորակները եւ այս կենտրոնը իրենց կարգն ունեն, առաջնութիւնը, տեղն ու ընթացքը, Ձեւն ու օրէնքը, ներդաշնակումը, ահա թէ ինչու փառաւոր արեւն իր ազնուափայլ բարձրութեան վրայ, բազմած իր գահին, իշխում է բոլոր մոլորակները, բուժիչ հայեացքով ուղղում է նրանց մտքերը յոռի եւ արշաւասոյր, յանց թագաւորի հրովարտակը, թռչում է դէպի չարն ու բարին։ Բայց երբ եղկելի մոլորակները յանդգնեն դուրս գալ իրենց բնական շրջապտոյտից, ինչպիսի՜ աղէտ կարող է ծագել, ո՞վ կը գուշակի վախճանը երկրի։ ծովերն ալեկոծ կը շաչեն վայրի, երկրաշարժերից հողը կը դողայ, փոթորիկները կ՝ոռնան խենթօրէն, ահ ու սարսափը մեզ կը ծուատի, տէրութիւնների միակերպութիւնն ու ամուսնական ազնիւ անդորրը կը պատառոտուեն, ջրասոյզ կարուեն, կը ջնջուեն իսպառ։ Օ՛, երբ ցնցուի կարգն աստուածատուր՝ վսեմ մտքերի հիմքն ու սանդուղքը, շփոթութիւնը մեզ կը պաշարի հիւանդութեան պէս։ Ինչպէ՞ս կարող են, շնորհեալ կարգը արհամարհելով, պահել համայնքը, եղբայրութիւնը քաղաքների մէջ, ինչպէ՞ս կարող են առեւտուր անել օտար ափերում, պահել ծնունդի աւագութիւնը, մենաշնորհը, թագադրուելու իրաւունքն արդար եւ արքայական մական կրելու ուժը եւ դափնին։ Եթէ քանդուի այս կարգը վերին, ծայր կ՝առնեն իսկոյն գժտութիւնները, կ՝ելնեն իրար դէմ իրերն հակադիր, բանտուած ջրերը կը բարձրացնեն իրենց լանջերը, եւ այս հաստատուն գունդը կը դառնայ հացի մի պատառ։ Օ՛, եթէ ուժին տրուէր իրաւունք, ամբարիշտ որդին կը սպանի հօրը, բռնաբարութիւնն ազնիւ տեսք կ՝առնի, ճիշտն ու սխալը, որոնց անվախճան կռիւների մէջ արդարութիւնը իր տունն է շինում, կը կորցնեն անուններն իրենց, եւ կ՝անյետանար արդարութիւնը, ուժը կը դիմէր քմահաճոյքին, քմահաճոյքը՝ ագահութեանը, ագահութիւնը՝ այդ գայլն հանրայայտ, ում բազմապատիկ նեցուկ են դառնում քմահաճոյքը եւ ուժը բռնի, կը խժռէր, ինչ որ իր շուրջը տեսնէր։ Մեծ

ագամեմնոն, երբ խախտուի կարգն այդ, չենք կարող երբեք խոյս տալ քաոսից։ Ով անգոսնում է այդ օրէնքն արդար, նա մեզ մղում է հետընթաց շարժման։ Գերագոյն տիրոջն արհամարհում է իր տեղակալը, իսկ նրան՝ մի քայլ ցած կանգնող մարդը։ Այսպէս քայլ առ քայլ, որ օրինակ է առաջին քայլին, գերագոյն տեղի ախտով վարակուած, աճում է գունատ նախանձութիւնը մեր շարքերի մէջ։ Եւ այս անարիւն նախանձն է պահում տրոյան կանգուն, նա չունի ամուր, հաստատուն ջիղեր։ Ես աւարտում եմ իմ խօսքը այստեղ. մեր գժտութեամբ է տրոյան ուժեղ։

NESTOR.
Իր իմաստութեամբ ուլիսը գտաւ մեր ողջ ուժերի ջլատման ախտը։

AGAMEMNON.
Յայտնի է, ուլիս, մեր հիւանդութեան բնոյթը արդէն, իսկ ինչպէ՞ս պէտք է այն ապաքինել։

ULYSSES.
Մեծ աքիլլեսը՝ քաջ ու մկանուտ, աջը մեր զօրքի, ում ականջները լեցուած են թեթեւ փառքի աղմուկով, պառկել է ահա իր վրանի տակ եւ հեգնում է մեզ։ Պատրոկլէսն է նրան միացել, որ ամբողջ օրը մարմինը Ձգած մահճակալին ծոյլ՝ չարախնդօրէն կատակ է անում։ Եւ այդ ապիկար, բիրտ ծաղրասէրը ծամածռուելով փորձում է ցոյց տալ մեր նկարագիրը։ Այդ զրպարտիչը, մեծ ագամեմնոն, երբեմն ծաղրի նետեր է ուղղում քո մեծութեանը եւ ինչպէս գոռոզ, վիսկոտ դերասան, ում փոքրիկ շնորհքն իր ծնկատակի փոսով է չափւում, որն էլ կարծում է, թէ իր փայտաշէն երկախօսութեամբ ծափեր կը շահի, այպանում է քեզ, քո բարձր դիրքը խղճուկ, անճարակ, անվայել լեզուով, որն ասես լինի կոտրած զանգի Ձայն։ Այդ բամբասողի փքուն բառերը ահեղամռունչ, դաժան տիփոնի շուրթերի վրայ կը թուան նոյնիսկ չափազանցութիւն։ Չնայած այս գարշ զրաբանութեանը՝ թիկնեղ աքիլլեսն, իր խիստ ճզմուած անկողնում Ձգուած, քաջալերում է պատրոկլէսին, քրքիջը շուրթին։ *«Հրաշալի՜ է, իսկ եւ իսկ ագամեմնոնն է։ Այժմ նեստորի դերը հնծ խաղա. շոյի՛ր մօրուքդ, ինչպէս անում է այդ խեղճ ծերուկը ելոյթից առաջ»։* Եւ ահա նորից ծամածռւում է պատրոկլէսը.

համեմատութիւնն այնքան է մօտիկ, որքան հակընթաց երկու բեւեռներ, եւ նման այնքան, որքան վուլկանը իր կենակցուհուն։ Բայց աքիլլեսը բղաւում է դեռ։ *«Հրաշալի՜ է, ճիշտ որ նեստորն է։ Իսկ այժմ ինձ խաղա, թէ նա ինչպէս է զէնքերը կապում, երբ կէսգիշերին հնչում է տագնապ»։* Այստեղ էլ, իրաւ, պատրոկլէսը տկար տարիքի թերութիւնները զուարճախօսութեան նիւթ է դարձնում. հազում է, թքում եւ ճարմանդները լանջազրահի հազիւ է կոճկում կամ թէ արձակում դողդոջուն ձեռքով։ Իսկ մեր կտրիճը ծիծաղից մեռնում, բացականչում է։ *«Բաւ է, պատրոկլէս, ձեռքից գնացի»։* Այս ձեւով նրանք անարգում են մեր կարողութիւնը, շնորհքը, ուժը, մեր փառաբանուած զօրավարներին նրանց խօսքերը, հրամանները, կռուի կոչերը, մեր յաղթանակը կամ պարտութիւնը։ Ինչ էլ որ լինի, ծաղրուծանակի նիւթ են դարձնում։

## NESTOR.

Եւ այս երկուսի նմանութիւնից, ինչպէս որ արդէն ուլիսը ասաց, շատերն են, աւա՜ղ, արագ վարակւում. այաքսը իրեն պահում է այնպէս քմահաճ, գոռոզ, այնպէս է ձգում իր երիվարի երասանակը, ինչպէս լայնալանջ մեր աքիլլեսը։ Եւ նրա նման վրան է խփել ու քէֆ է անում, ծաղրում մեր երկրի այս պատերազմը, յանդուգն է, ինչպէս մի պատգամախօս, սադրում է, դրդում կաղ թերսիդեսին, ում դառն լեզին ծայրատում է չար զազրախօսութիւն, նա մեզ խառնում է կեղտոտ ցեխի հետ, մեզ մեղկացնում, մեզ չի վստահում՝ չզգալով բնաւ մեզ շրջապատող վտանգն ահաւոր։

## ULYSSES.

Նրանք ծաղրում են մեր զգօնութիւնը եւ կոչում են այն սոսկ երկչոտութիւն, նրանք ասում են՝ իմաստութիւնը եւ պատերազմը չեն կարող գնալ նոյն ճանապարհով, եւ պարսաւելով մեր շրջահայեաց կանխատեսումը՝ գնահատում են լոկ ձեռքի ուժը։ Արհամարհում են մտաւոր ուժը, հանգստութիւնը, որ ի զօրու են կարգել ձեռքերի զարկերը ստոյգ, երբ հանգամանքը կանչում է նրանց։ Նրանք, չափուելով խիստ օրինապահ գործի հմտութեամբ, կարող են կշռել բեռը թշնամու։ Եւ նրանց համար մտաւոր ուժը գործ է կանացի, զուարճանք մանկան ու պարապ մի խաղ։ Ահա թէ ինչու պատի տակ կռուող մի արու ոչխար, որ ծանր է կշռում եւ հարուածում է

սաստիկ ուժգնօրէն, աւելի թանկ է այդ մարդկանց համար, քան թէ այն Ձեռքը, որ արարել է այդ անասունը, քան թէ այն միտքը, որ վարել գիտէ նրա շարժումը։

NESTOR.
Օ՛, շա՛տ աւելի մեծ արժէք ունի Ձին աքիլլեսի, քան թէ թետիսի զարմերը բոլոր։

[War drums.]

AGAMEMNON.
Ո՞վ է փող զարնում, մի տե՛ս, մենելաոս։

MENELAUS.
Տրովադացիք են։

AGAMEMNON.
Ինչ՞ն է քեզ բերել դէպ մեր պալատը։

AENEAS.
Ասացէք, խնդրեմ, սա՞ է վրանը ագամեմնոնի։

AGAMEMNON.
Այո՛, ճիշտ այսպէս։

AENEAS.
Կարո՞ղ է արդեօք մի արքայորդի կամ թէ մի հերալդ թագաւորական լսողութեանը մի լուր հաղորդել։

AGAMEMNON.
Այնպէս ապահով, ինչպէս չէր կարող նրան պաշտպանել սուրն աքիլլեսի։ Բիւր գլուխների ներկայութիւնը նրան բաշխում է ապահովութիւն, ովքեր կոչում են ագամեմնոնին իրենց առաջնորդ։

AENEAS.
Ես ինձ զգում եմ այստեղ ապահով։ Ինչպէ՞ս կարող է օտարերկրացին այս կայսերական հայեացքների տակ գտնել արքային։

AGAMEMNON.
Ասում ես՝ ինչպէ՞ս։

AENEAS.
Այո՛, որպէսզի ես արթնացնեմ խոր ակնածութիւն, որպէսզի դէմքս նախապատրաստեմ խոնարհ շիկնանքին, ինչպէս ամօթխած այն առաւօտը, երբ նա սառնօրէն հայեացք է նետում ջահէլ Ֆեբուսին։ Ո՞վ է այդ աստուածն՝ այրերի շարքում, ո՞վ է այդ հզօր եւ քաջախորհուրդ ագամեմնոնը։

AGAMEMNON.
Այս տրոյացին այպանում է մեզ կամ տրոյացի դրանիկները այսպէս են քծնում։

AENEAS.
Դրանիկները անզէն՝ խոնարհ են եւ բարեհամբոյր, ինչպէս հրեշտակները։ Այսպէս են նրանք խաղաղ օրերին, բայց երբ շաչում է ռազմի շեփորը, եռում են նրանց կատաղութիւնը, բարի Ձեռքերը, անդամներն հպարտ, ու հաւատարիմ սրերն են փայլում՝ ի փառս զեւսի։ Բայց լռիր, Էնէաս, լռիր, տրոյացի, եւ քո շուրթերին քո մատները դիր։ Երբ գովեստն ինքն է դրուատում իրեն, ընկնում է նրա գինն արագօրէն, բայց երբ նրան է թշամին գովում, այդ գովեստն, իրաւ, փառքն է հոլովում։

AGAMEMNON.
Քեզ Էնէա՞ս են կոչում, տրոյացի։

AENEAS.
Այո՛, յո՛յն, սա է անունս ստոյգ։

AGAMEMNON.
Խնդրում եմ, ասա, ինչո՞ւ ես եկել։

AENEAS.
Օ՛, ների՛ր, միայն ագամեմնոնին կարող եմ ասել։

AGAMEMNON.
Նա տրոյացուն չի կարող լսել բոլորից թաքուն։

AENEAS.
Բայց ես չեմ եկել, որ նրա ունկին գաղտնիք շշնջամ։ Ինձ հետ բերել եմ այստեղ մի փողհար, որ արթնացնի ականջը նրա, որ շտկի նրա զգայարանը ուշադրութեամբ, եւ ապա՝ խօսեմ։

AGAMEMNON.
Խօսի՛ր, տրոյացի, խօսի՛ր քամու պէս։ Արդ՝ ագամեմնոնն անկողնու մէջ չէ։ Որպէսզի զգաս, որ նա արթուն է, խօսում է ահա նա ինքը քեզ հետ։

AENEAS.
Օ՛, փչի՛ր, փողհա՛ր, փչի՛ր բարձրաձայն, թող քո պղնձեայ Ձայնը թափանցի այս դատարկասէր վրանների մէջ, թող իւրաքանչիւր յոյնը իմանայ, որ տրովադան ուզում է խօսել յոյժ արդարութեամբ։ Փողի Ձայներ։ Մեծ ագամեմնոն, այստեղ՝ տրոյայում, արքայազն ունենք, անունը՝ հեկտոր, որդին պրիամոսի, որն այս ծանրաշարժ, խիստ երկարատեւ զինադադարով ժանգահարուել է։ Նա հրամայեց, որ ինձ հետ տանեմ մի հմուտ փողհար, ով կ՝ազդարարի իր խօսքն իմաստուն։ Օ՛, թագաւորներ, արքայազուններ ու զօրավարներ, եթէ կայ այստեղ ազնուազարմ մի յոյն, ում համար թանկ է պատիւն հանգստից, ում համար փառքը բարձր է վտանգից, ում քաջութիւնից փախչում է վախը, ով իր սիրուհուն հաւատարմութեան խօսք է շշնջում եւ յանդգնում է խոստանալ նրա գեղեցկութիւնը, արժանիքները, նրան հեկտորը կանչում է մարտի։ Խիզախ

հեկտորը տրոյացիների եւ հելլենների հայեացքի ներքոյ ապացուցում է կամ կ՝ապացուցի, որ ինքը ունի մի չքնաղ լէդի՝ աւելի սիրուն, աւելի խոհեմ ու հաւատարիմ, քան թէ այն կինը, որին սեղմում է իւրաքանչիւր յոյն իր կրծքի վրայ։ Վաղն առաւօտեան Ձեր վրանների ու տրովադայի պատերի միջեւ իր փողհարի հետ նա պէտք է կանչի այն յոյնին, ով իր կնոջն է սիրում հաւատարմօրէն։ Ով էլ յայտնուի, հեկտորը նրան կը յարգի սիրով, թէ չյայտնուի, նա, տուն դառնալով, կ՝ասի՝ յոյն կանայք թուխ են, արեւկէզ եւ չարժեն անգամ մի ջարդուած նիզակ, ահա այն բոլորն, ինչ հեկտորն ասաց։

AGAMEMNON.
Այս խօսքերն, անշուշտ, մենք կը հաղորդենք սիրուհիներիս, բայց նրանք, ովքեր քնքուշ սիրտ ունեն, տանն են մնացել, իսկ մենք զինուոր ենք։ Վատ է այն զինուորն, ում սրտում չկայ սիրոյ վառ կրակ։ Օ՜, կը յայտնուի մի խիզախ զինուոր, որն էլ պատասխան կը տայ հեկտորին։ Հակառակ դէպքում՝ ինքս կը գնամ նրան ընդառաջ։

NESTOR.
Դու նրան ասա նեստորի կողմից, որն այր էր մի քաջ դեռ այն օրերին, երբ պապն հեկտորի մօր կուրծքն էր ուտում, թէեւ նա հիմա ծերացել է խիստ, բայց եթէ ամբողջ յունական զօրքում չկայ մի քաջ մարդ՝ բոցավառ սրտով, ով սիրոյ համար պատասխան կը տայ, դու նրան ասա, որ կը թաքցնեմ արծաթ մազերս իմ ոսկեդրուագ դիմապահի տակ, եւ այս չորացած Ձեռքերս նորից զրահ կը հագնեն, եւ հանդիպելով հեկտորին՝ կ՝ասեմ, որ իմ սիրուհին աւելի լաւն է, քան իր պառաւը, եւ աւելի սուրբ, քան թէ կարող է աշխարհին արարել։ Իմ երակներում էլ չկայ արիւն, բայց կը հանդիպեմ ես այդ պատանուն։

AENEAS.
Թող աստուած փրկի մեզ այս փորձանքից։

ULYSSES.
Ամէն։

AGAMEMNON.
Թոյլ տուր, Էնէաս, քեզ հետ թեւանցուկ քեզ առաջնորդել դէպ մեր վրանը, այնտեղ կ՝ունկնդրի աքիլլեսը քեզ, եւ ապա միայն՝ յոյն իշխանները՝ վրանից վրան։ Գնալուց առաջ մեզ հետ կը նստես խնջոյքի սեղան եւ դու կը լսես ազնիւ թշնամու մաղթանքը բարի։ Բոլորը գնում են, բացի ուլիսից ու նեստորից։

ULYSSES.
Նեստո՛ր։

NESTOR.
Ի՞նչ, ուլիս։

ULYSSES.
Իմ գլխում հրաշք միտք է յղացել, դարձիր ինձ համար դու սուրբ ժամանակ, որ նրան ձեւ տամ։

NESTOR.
Ի՞նչ յղացում է։

ULYSSES.
Բութ սեպով հեշտ է կտրել-բաժանել ամուր հանգոյցը՝ այն հպարտութեան հասուն յունդերը, որ արմատներ են ձգել հաստատուն աքիլլեսի մէջ, պէտք է հէնց հիմա տակից կտրատել, զի տարածուելով խիստ կը բազմանան տնկարանի պէս եւ մեզ կը սպառնան։

NESTOR.
Իսկ ինչպէ՞ս անել։

ULYSSES.
Այս հրաւէրը, որ մեզ նետել է գոռոզ հեկտորը, վերաբերում է սոսկ աքիլլեսին։

NESTOR.

Նրա միտքն է պարզ։ Եւ մարդ հեշտութեամբ գլխի է ընկնում, թէ նա ինչպիսի նկրտում ունի, եթէ ընդունի քաջ աքիլլեսը նրա հրաւէրը, թող նրա ուղեղն անպտուղ դառնայ, ինչպէս լիբիայի ափերն աւազուտ, թէեւ ապոլլոնն այդ մասին գիտէ, բայց դատողութեան մեծ արագութեամբ նա կը հասկանայ, թէ ում է ուղղուած այդ հրաւէրը։

ULYSSES.

Իսկ դու կարծում ես, որ նա կ՝ընդունի՞ մարտահրաւէրը։

NESTOR.

Այդ հանդիպումը տեղի կ՝ունենայ։ Եւ ո՞վ կարող է հեկտորից խլել նրա պատիւը, եթէ ոչ միայն քաջ աքիլլեսը։ Թէեւ այս մարտը լոկ զուարճանքի բնոյթ կը կրի, բայց փորձութեան մէջ կայ մի մեծ խորհուրդ. տրոյացիք այստեղ կ՝ուզեն ճաշակել իրենց նուրբ քիմքով մեր ճանաչումը։ Եւ հաւատա ինձ, սիրելի ուլիս, մեր մեղադրանքն այլանդակօրէն կը հակակշռէ այս կռիւն անմիտ, վասնզի նրա յաջողութիւնը, թէեւ մասնակի, անպայմանօրէն արւում է չափով, վասնզի նրա գլխացանկի մէջ, որ շատ փոքրիկ է յաջորդ գրքերի համեմատութեամբ, տեսնում են արդէն մեզ ներկայացնող հսկայ զանգուածի մանկան կերպարը։ Պարզ է, այն մարդը, որ հեկտորի հետ պիտ մենամարտէ, մեր իսկ ընտրեալն է, իսկ ընտրութիւնը մեր ողջ սրտերի փոխադարձ տենչը, վարձքն է ընտրեալի, որն էլ քամւում է մեր զօրութիւնից։ Եւ եթէ յանկարծ Ձախորդութիւնը նրան փաթաթուի, ողջ թշնամական կողմը կը ցնծայ իր յաղթանակով, եւ ինչպիսի՜ մեծ կարծիք կ՝ունենայ յաղթողն իր մասին։ Եւ եթէ կարծիքն արդարացւում է, նրա Ձեռքերը, գործիք դառնալով, այնպէս են բանում, ինչպէս նոյն Ձեռքից արձակած սրերն ու սլաքները։

ULYSSES.

Ների՛ր ինձ, նեստոր։ Ահա թէ ինչու պահանջմունք չկայ, որ աքիլլեսը հանդիպի նրան։ Պէտք է խորամանկ փերեզակի պէս նախ վատ ապրանքը վաճառքի հանել.

թերեւս առնեն։ Եթէ մեր հաշւում մենք սխալ դուրս գանք, հարկ է լաւագոյն ապրանքը հանել։ Օ՜, ոչ մի դէպքում թող չհանդիպեն նրանք իրարու, քանզի մեր պատիւն ու ամօթանքը չեն կարող խոյս տալ այդ երկու յամառ հալածիչներից։

NESTOR.
Իմ ծեր աչքերը նրանց չեն տեսնում։ Ովքե՞ր են նրանք։

ULYSSES.
Փառքի վայելքը, որ պիտ ճաշակէ մեր աքիլլեսը, թէ գոռոզութեամբ նա չտառապէր, մենք կարող էինք նրա հետ կիսել, բայց առանց այդ էլ այնպէս հպարտ է, որ լաւ է՝ խանձուենք մենք աֆրիկայում՝ բարկ արեւի տակ, քան կիսենք նրա լպիրշ հայեացքի պարծենկոտ, աղի արհամարհանքը։ Իսկ եթէ յանկարծ հեկտորը յաղթի, անպատուութիւնը կ՝արատաւորի մեր քաջ դիւցազնին ու մեր պատիւը։ Ո՜չ։ Վիճակ գցենք, թող մի հնարքով գոռոզ հեկտորը եւ ապուշ այաքսն իրար հանդիպեն, մենք կը հռչակենք այաքսին հերոս, եւ դա կը բուժի մեծ միրմիդոնին, ով գովեստներից խելքն է թռցրել, եւ կը խոնարհի նրա կատարը, որ շատ աւելի բարձր է ցցուած, քան թեթեւաթեւ աղեղն իրիսի։ Եթէ բթամիտ, անուղեղ այաքսն անվնաս ելնի այդ մենամարտից, մենք կը դրուատենք նրան բազմաձայն, եթէ պարտուի, չի վարանելու մեր այն կարծիքը, որ մենք դեռ ունենք լաւագոյն մի մարդ։ Կը յաղթի թէ ոչ՝ մեզ օգտակար է այաքսն անհոգի, նա աքիլլեսի ողջ փետուրները մէկ-մէկ կը պոկի։

NESTOR.
Ուլիս, ես հիմա ճաշակում եմ քո մտքի պտուղը, պէտք է վայելի ագամեմնոնն էլ։ Գնանք նրա մօտ։ Իմացի՛ր, շունը շան թաթ չի կծում, քանզի նրանք նոյն ոսկորն են կրծում։ [Exits.]

]0[

## ACT II. SCENE I.

The Grecian Camp. Ajax and Thersites enter.

AJAX.

Թերսիդե՛ս։

THERSITES.

Իսկ ի՞նչ կը լինէր, եթէ ագամեմնոնը ոտից գլուխ բշտիկներով ծածկուէր։

AJAX.

Թերսիդե՛ս։

THERSITES.

Եւ այս բշտիկները չե՞ն պայթի։ Ասենք թէ պայթեցին։ Այն ժամանակ ինքը՝ զօրավարը, կը պայթի, այնպէս չէ՞։

AJAX.

Շո՛ւն։

THERSITES.

Ուրեմն, նրանից մի բան դուրս կը գայ։ Այժմ բանի պէտք չի։

AJAX.

Շան որդի, խո՞ւլ ես, չե՞ս լսում։ Ա՛ռ քեզ։ Հարուածում է նրան։

THERSITES.

Բիճ, մեր ժանտախտը վրադ թափուի։

AJAX.

Խօսի՛ր, բորբոսնած խմոր, խօսի՛ր։ քեզ բռունցքներս մի լաւ կը գեղեցկացնեն։

THERSITES.
Իսկ իմ հեգնանքը քեզ կը դարձնի իմաստուն եւ աստուածավախ։ Բայց, ինչքան խելքս է կտրում, քո Ձին աւելի շուտ ատենաբանութիւն կը սովորի, քան դու անգիր կ՝անես որեւէ աղօթք։ քո գործը ծեծելն է, այնպէս չէ՞։ քոս ընկիր։

AJAX.
Է՜յ, թնօպի սունկ, ասա՛, ի՞նչ ես յայտարարել։

THERSITES.
Կարծում ես, չե՞մ զգում հարուածներդ։

AJAX.
Քեզ ասում եմ՝ ի՞նչ ես յայտարարել։

THERSITES.
Երեւի յայտարարել են, որ դու յիմար ես։

AJAX.
Ձայնդ կտրիր, խո՛զ։ Մատներս էլի քոր են գալիս։

THERSITES.
Ես կ՝ուզէի, որ դու ոտից գլուխ քորուէիր, իսկ ես քորէի մարմինդ։ Ես քեզնից կը շինեմ գարշելի մի քոս։

AJAX.
Քեզ ասում եմ՝ ի՞նչ ես յայտարարել։

THERSITES.
Առաւօտից իրիկուն քթիդ տակ ծաղրում ես աքիլլեսին։ Դու նախանձում ես նրան, ինչպէս ցերբերն էր նախանձում պերսեփոնէի գեղեցկութեանը։ Այո՛, դու ամբողջ օրը հաչում ես նրա վրայ։

AJAX.
Տիկի՛Ն թերսիդես։

THERSITES.
Խփի՛ր նրան։

AJAX.
Դդո՛ւմ։

THERSITES.
Նա քեզ իր բռունցքներով այնպէս կը փշրի, ինչպէս նաւաստին՝ չոր հացը։

AJAX.
Զա՛յնդ, զզուելի՛ շուն։ Հարուածում է նրան։

THERSITES.
Խփիր, խփիր։

AJAX.
Առ քեզ, վիուկի աթոռ։

THERSITES.
Խփիր, իշի գլուխ, խփիր։ քո գլխում աւելի քիչ խելք կայ, քան իմ արմունկների մէջ։ Իշապանը քեզ, քոսոտ էշ, կ՝արածեցնի։ Դու կարող ես այստեղ միայն տրոյացիներին ծեծել։ Մի քիչ խելք ունեցող մարդը քեզ կ՝առնի ու կը ծախի բերբերեան ստրուկի պէս։ Եթէ դու շարունակես ինձ ծեծել, ես բոլորին կ՝ասեմ, թէ դու քեզնից ինչ ես ներկայացնում, հաստագլո՛ւխ։

AJAX.
Շո՛ւն։

TROILUS.
Ովքեր խօսում են այսպէս խելացի, նրանք լաւ գիտեն, թէ ինչ են ասում։

CRESSIDA.
Բայց գուցէ, տէ՛ր իմ, ես աւելի շատ խորամանկեցի, քան թէ ցոյց տուի իմ սէրը անկեղծ։ Այսպէս համարձակ վազեցի դէպի խոստովանանքը, որպէսզի կարթով մտքերդ որսամ։ Դու իմաստուն ես եւ ինձ չես սիրում, քանզի չեն կարող իմաստուն լինել եւ դարձեալ սիրել։ Սա շնորհուած է լոկ աստուածներին։

TROILUS.
Օ՛, ես կ՝ուզէի, որ կինն իր սրտում մինչեւ ծերութիւն, այդ թւում ե՛ւ դու, յաւէտ վառ պահէր իր սիրոյ կանթեղն ու կրակները, եւ սիրուց փթթէր յարատեւութեան ու ջահէլութեան կանաչ գարունը։ Յիրաւի, փթթէր աւելի ահեղ, քան թէ կարող է խենթ արիւնն անել։ Օ՛, ես կ՝ուզէի սրտիս համոզել, որ դու, սիրելիս, իմ անկեղծութեան, հաւատարմութեան նժարի վրայ դնէիր սիրուդ նոյնչափ ծանրանիստ կշռաքարերը, եւ ինձ կը զգայի այր մի բախտաւոր։ Բայց, աւա՜ղ, սէ՛ր իմ։ Ես ճշմարիտ եմ, ինչպէս պարզութիւն, եւ աւելի պարզ, քան ճշմարտութեան անմեղ երեխան։

CRESSIDA.
Կը վիճեմ քեզ հետ։

TROILUS.
Օ՛, կռիւ ազնիւ, ուր մարտնչում է ճշմարտութիւնը ճշմարտութեան հետ, որպէսզի պարզուի՝ ով է աւելի ճշմարիտ կեանքում։ Թող աշխարհ եկող սիրահարները երդուեն տրուլոսի բարի անունով, երբ նրանց երգերն հաւատարմութեան՝ լեցուն մեծազօր բաղդատումներով ու երդումներով, սպառեն բոլոր ճոխ պատկերները, երբ նրանք յոգնեն անվերջ կրկնելուց, որ իրենց սէրն է ամուր, յանց պողպատ, որ սիրել գիտեն, ինչպէս սիրում է լոյսը լուսնակին, արեւը՝ օրուան, կրիան՝ իր Զագին, մագնիսն՝ երկաթին կամ թէ երկիրը՝ Զգողութեանը, թող նրանք որպէս

հաւատարմութեան սրբազան երդում կրկնեն բարձրագոչ։ *«Հաւատարիմ ենք, ինչպէս տրոյլոսը»։* Թող թագադրեն լոկ այս բառերով հաւատարմութեան ուխտը անխարդախ։

CRESSIDA.
Թող այդպէս լինի։ Եթէ մազաչափ դրժեմ իմ ուխտը, թող տարիներ անց, երբ ժամանակը, խիստ ծերանալով, իրեն մոռանայ, երբ տրովադայի պատերը փլուեն հորդ անձրեւներից, երբ կոյր մոռացումն ընչասիրաբար կուլ տայ քաղաքներ, երբ տէրութիւններն աննկարագիր փոշու կոյտ դառնան, թող միայն յիշեն, թէ քեզ ինչպէս եմ ես դաւաճանել։ Պախարակելով անհաւատարիմ կոյսերին բոլոր՝ թող ասեն, որ ես անհաստատ էի, ինչպէս աւազը, քամին եւ օդը, նենգամիտ, ինչպէս աղուէսն է դիմում անմեղ գառնուկին, կամ գայլը՝ հորթին, կամ ընձառիւծը՝ քնքուշ եղնիկին, եւ թող իմ մաքուր սէրը կեղծ լինի, ինչպէս խորթ մայրը։ Այո՛, թող ասեն, թող խոցեն սիրտը դաւաճանութեան եւ ասեն։ *«Խարդա՜խ, ինչպէս կրեսիդան»։*

PANDARUS.
Լաւ է, կարծես թէ համաձայնութեան եկան։ Այժմ պէտք է վաւերացնել։ Ես վկան կը լինեմ։ Տուր Ձեռքդ, տրուլոս, տուր Ձեռքդ, եղբօրս աղջիկ։ Եւ եթէ դուք մի օր միմեանց դաւաճանէք այն բանից յետոյ, երբ այսքան ուժ ու եռանդ ծախսեցի Ձեզ համար, թող բոլոր միջնորդները մինչեւ աշխարհի կործանումը կոչուեն պանդարոսներ, բոլոր անհաւատարիմ տղամարդիկ՝ տրուլոսներ, եւ բոլոր նենգամիտ կանայք՝ կրեսիդաներ։ Ասէք՝ ամէն։

TROILUS.
Ամէ՛ն։

CRESSIDA.
Ամէ՛ն։

PANDARUS.
Ամէն։ Իսկ այժմ ես Ձեզ ցոյց կը տամ ննջարանն ու մահճակալը։ Մահճակալը, որպէսզի չմատնի Ձեր հանդիպման մասին, սեղմէք մինչեւ մահ։ Գնանք։ Թող կուպիդոնը համեստ կոյսերին պարգեւի անխօս՝ մի շքեղ սենեակ, մի տաք անկողին ու մի պանդարոս։ [Exits.]

][][

ACT III. SCENE III.
The Greek Camp. Agamemnon, Ulysses, Diomedes, Nestor, Ajax, Menelaus and Calchas all enter.

CALCHAS.
Մեծանուն այրեր, հիմա միջոցն է Ձեզ թելադրում, որ իմ արժանի ծառայութեանը Ձեր բազմախոստում պարգեւն հատուցէք։ Յիշէք, շնորհիւ իմ տեսողութեան, լքեցի տրոյան՝ թողնելով այնտեղ իմ ունեցուածքը, մի դաւաճանի անուն վաստակած։ Ես ստուգութիւնն ու տիրապետող յարմարութիւնը փոխանակեցի խիստ կասկածելի ճակատագրով, եւ արգելքի տակ մնաց այն ամէնն, ինչ ժամանակը, ծանօթութիւնը, կարգն ու կանոնը ու կացութիւնը չէին զլացել տալ իմ բնութեանը։ Ձեզ ծառայելով՝ դարձել եմ ահա թշուառ մի նորեկ, մի թափառական, անծանօթ մի մարդ։ Ես թախանձագին պաղատում եմ Ձեզ. տուէք ինձ հիմա մի փոքրիկ շնորհ՝ որպէս մի նշոյլ Ձեր բազմապատիկ այն խոստումներից, որոնք ինձ պիտի, ինչպէս ասում էք, կեանքում զարդարեն։

AGAMEMNON.
Ի՞նչ ես կամենում, ասա, տրոյացի։

CALCHAS.
Երէկ գերել էք մի տրոյացու, անունն՝ անթենոր, տրոյան նրան թանկ է գնահատում։ Դուք յաճախ էիք ինձ ասում, տէր իմ, դրա համար էլ շնորհակալութիւն, որ իմ աղջկան՝ կրեսիդային, կը փոխանակէք մի երեւելի,

ազնիւ գերու հետ, բայց տրոյացիները Ձեզ մերժում էին։ Այս անթենորը, որ տրոյացոց գործերն է վարում, վիթխարի ուժ է, եւ նոյնիսկ կը տան արեամբ իշխանի, որդուն պրիամոսի, միայն թէ նրան Ձեռք բերեն նորից։ Մեծանուն այրեր, ետ ուղարկեցէք այս անթենորին՝ որպէս փրկագին իմ քաղցր դուստրին, եւ կրեսիդան իմ արժանաւոր ծառայութեանը կը վարձատրի։

AGAMEMNON.
Թող դիոմեդեսը նրան ուղեկցի եւ այստեղ բերի կրեսիդային։ Ես կը կատարեմ խնդրանքդ, կալքաս։ Ազնիւ դիոմեդես, դու պատշաճօրէն փոխանակութիւնն այսօր իսկ հոգա։ Ի դէպ, իմացիր, եթէ հեկտորը վաղն առաւօտեան ուզում է կռուել, ապա պատրաստ է մեր քաջ այաքսը։

DIOMEDES.
Ես յանձն եմ առնում այս ծանրութիւնը կրել հպարտօրէն։

[As Diomedes and Calchas exit Achilles and Patroclus enter.]

ULYSSES.
Նայէք, կանգնած է մեծ աքիլլեսը վրանի առաջ։ Թող մեր զօրավարն այս քաջի կողքով անտարբեր անցնի, իբրեւ թէ նրան նա չի ճանաչում։ Դուք էլ, իշխաններ, անցէք թերահոգ՝ տարտամ մի հայեացք Ձգելով վրան։ Ես վերջում կը գամ։ Եւ, հաւանաբար, նա ինձ հարց կը տայ, թէ այս աչքերը ինչու են այսպէս ծուռ նայում իրեն։ Եթէ հարցնի, ես կը տամ հեգնանքն՝ իբրեւ դեղորայք, որ օգտագործի Ձեր օտարացման եւ իր սեփական հպարտութեան դէմ, եւ յօժարութեամբ կ՚ըմպի հեղուկն այս։ Գուցէ դաս լինի. չէ՞ որ ուրիշի հպարտութեան մէջ, ինչպէս հայելում, կը տեսնի իրեն։ Օ՛, դու յարմարուող ծնրադրութիւն, հաճելի կեր ես բարձրամիտ մարդուն։

AGAMEMNON.
Մենք կը կատարենք Ձեր լաւ խորհուրդը, եւ կ՚անցնենք կողքով որպէս անծանօթ մի օտարական, թող ոչ մի իշխան նրան չողջունի կամ հպարտօրէն այնպէս

խոնարհուի, որ զգայ նրանց արհամարհանքը, որն էլ աւելի կը ցնցի նրան, քան թէ լիուլի անհոգութիւնը։ Ես Ձեզ ցոյց կը տամ ճիշտ ճանապարհը։

ACHILLES.
Ի՞նչ։ Զօրավարն է վերստին գալիս, երեւի ինձ հետ խօսել են ուզում։ Դուք արդէն գիտէք իմ որոշումը. ես չեմ կռուելու տրոյացիների դէմ։

AGAMEMNON.
Ի՞նչ է ասում նա։ Գուցէ մեզանից մի բան է խնդրում։

NESTOR.
Տէր, իմ, որեւէ բա՞ն էք կամենում մեր զօրավարից։

ACHILLES.
Ոչ։

NESTOR.
Ոչինչ, տէր իմ։

AGAMEMNON.
Օ՜, աւելի լաւ։

[Agamemnon and Nestor exit.]

ACHILLES.
Էհէ՜յ, բարի օր։

MENELAUS.
Ինչպէ՞ս էք, ինչպէ՞ս։ [Exits.]

ACHILLES.
Կնախաբն էլ է վրաս ծիծաղում։

AJAX.
Տեսա՞ր, պատրոկլէս։

ACHILLES.
Բարի լոյս, այաքս։

AJAX.
Ի՞նչ։

ACHILLES.
Բարի լոյս։

AJAX.
Այո՛, բարի լոյս ե՛ւ յաջորդ օրուան։ [Exits.]

ACHILLES.
Ի՞նչ է պատահել այս բարի մարդկանց։ Ինձ չե՞ն ճանաչում։

PATROCLUS.
Նրանք անցնում են այնպէս անտարբեր, կարծես երէկ չէր՝ քծնանքը դէմքին խոնարհւում էին այդ քաջի առաջ, ինչպէս ջերմեռանդ հաւատացեալը սուրբ եկեղեցում։

ACHILLES.
Միթէ՞ դարձել եմ ես վերջին աղքատ։ Օ՛, բախտից լքուած ամէն մեծութեան մարդն էլ է լքում։ Նա, ով ընկնում է, այլոց աչքերում աւելի արագ կարդում է իրեն կործանումն ահեղ, քան զգում է այն, քանզի ողջ մարդիկ թիթեռի նման իրենց ալիւրոտ թեւերն են բացում ամռանը միայն։ Եւ չկայ մի մարդ, որ նեցուկ կանգնի

հասարակ մարդուն, յարգում են նրան, ով ունի պաշտօն, փառք, հարստութիւն, բայց մոռանում են, որ պատահմունքի այս շնորհները յաճախ են խլւում։ Եւ երբ ընկնում են այս խիստ անհաստատ յենարանները, որոնց վրայ էլ անհաստատ սիրոյ կիրքն է հիմնուած, նա քարշ է տալիս այլոց դէպի վար, նրանց հետ մէկտեղ ինքն էլ կործանւում։ Բայց այս վիճակից ես շատ եմ հեռու, քանզի ընկեր ենք ես ու Ֆորտունան։ Իմն են բոլորը, ինչ ձեռանգել եմ ես մինչեւ հիմա, բացի այս մարդկանց անփոյթ հայեացքից, որոնք կարծես թէ գտել են իմ մէջ անարժէք մի բան, որ նրանց քնքուշ ունկն է սղոցում։ Բայց ահա գիտուն ուլիսն է գալիս, նա գիրք է կարդում, պէտք է ընդհատեմ։ Հէ՜յ, լսիր, ուլիս։

ULYSSES.
Ի՞նչ է, մեծանուն թետիսի որդի։

ACHILLES.
Այս ի՞նչ ես կարդում։

ULYSSES.
Ահա թէ ինչ է մի ապուշ գրում։ *«Որքան էլ մարդը տաղանդ ունենայ, լոկ այն դէպքում է այդ շնորհն զգում, երբ այրում է նա մի սուրբ ջերմութեամբ սրտերը այլոց, եւ ջերմութիւնն այդ լուսաշող կրքով վերադարձնում է տիրոջն անպայման»։*

ACHILLES.
Այսպէս է, ուլիս։ Մարդը իր դէմքի գեղեցկութիւնը չի կարող տեսնել, այն պէտք է տեսնել ուրիշի աչքով։ Եւ ինքը՝ աչքը՝ մեր զգացումի մաքրագոյն ոգին, իրեն չի տեսնում, չի կարող երբեք իրենից դուրս գալ, բայց հանդիպում է աչքն ուրիշ աչքի, եւ ողջունում են միմեանց իւրովի, քանզի հայումը չի վերադառնում դէպի նոյն ինքը, մինչեւ չշրջուի, չնայի այնտեղ, ուր զօրու է նա տեսնել ինքնիրեն։ Սա ամենեւին տարօրինակ չէ։

ULYSSES.
Ես չեմ վիճարկում այս միտքը բնաւ, այն ծանօթ չէ ինձ, բայց հեղինակը ջանում է

ցոյց տալ, որ, իբրեւ, մարդը չի կարող զգալ իր շնորհների քաղցր պտուղը, քանի դեռ ուրիշն այն չի ճաշակել, որ, իբրեւ, մարդը իր արժէքների գինը չգիտի, քանի դեռ նրանք չեն արտացոլւում այլոց ծափերում, որոնք բարձրաբերձ կամարի նման վերադարձնում են Ձայները, կամ թէ դարպասների պէս, կանգնած լուսաշող արեւի դիմաց, նրան են կրկին վերադարձնում նրա պատկերը ու ջերմութիւնը։ Ես, յափշտակուած այս դատողութեամբ, իմ միտքն եմ բերում փութոյ եռանդով անյայտ այաքսին։ Օ՜, երկի՛նք, երկի՛նք, ի՞նչ է այս մարդը։ Իսկական մի Ձի, չգիտէ՝ ինչ է թաքնուած իր մէջ։ Օ՜, մայր բնութիւն, որքա՜ն մարդիկ կան՝ արտաքուստ յիմար, բայց ողջ էութեամբ գործ են, տքնութիւն, եւ որքա՜ն մարդիկ՝ արտաքուստ խելօք, բայց արժանիքով խղճուկ արարած։ Վաղը կը տեսնէք, թէ բախտն ինչպէս է անյայտ այաքսին փառքով պսակում։ Օ՜, աստուա՛ծ, ինչո՞ւ մարդն այն է սիրում, ինչն ուրիշին է վերուստ շնորհուած։ Ինչքա՜ն մարդիկ են սողում անհաստատ բախտի Ձեղունը, երբ ուրիշներն են ապուշի տեսքով նրա առջեւ խաղում, ինչքա՜ն մարդիկ են ատում ուրիշի հպարտութիւնը, երբ հպարտութիւնն իր զուարթութեամբ գիրանում է խիստ։ Նայի՛ր, ինչպէս են յոյն իշխանները յիմար այաքսին դնում իրենց պինդ ուսերի վրայ, կարծես ճզմում են նրա ոտքերը կուրծքը հեկտորի, եւ մեծ տրոյան ողբում է ցաւից։

ACHILLES.

Հաւատում եմ քեզ։ Նրանք անտարբեր անցան իմ կողքով։ Այսպէս հարուստն է աղքատի մօտով անց կենում հպարտ, նրանք չասացին ինձ բարի մի խօսք, ինձ չողջունեցին, միթէ՞ այսպէս շուտ նրանք մոռացան իմ սխրանքները։

ULYSSES.

Օ՜, ժամանակը կրում է մէջքին իսկայ մի մախաղ, ուր լցնում է նա ահեղ մոռացութեան ողորմութիւնը. նա մեծ ճիւաղ է ապերախտութեան, անցեալում ծնուած խիզախ գործերի այս փշրանքները մոռացման անյագ երախն է խժռում մի ակնթարթում, միայն յարատեւ արարքն է, գիտցիր, պահում-պահպանում փաղփիւղը փառքի։ Անցեալ սխրանքը ասես թէ լինի ժանգահար զրահ, որ պատից կախած՝ ծաղրում են վրան։ ճանապարհի ընկիր, փառքի արահետն այնքան է անձուկ, որ միայն մէկը կարող է անցնել նրա վրայով։ ճամփադ մի զիջիր, քանզի

մրցութիւնն հազար ոտք ունի, որ հետամուտ են լինում մէկմէկու։ Բաւ է, որ թողնես ու մի կողմ քաշուես քո ճանապարհից, նրանք խռնաւազ կը նետուեն վրադ որպէս խենթ հեղեղ, եւ դու, ինչպէս մի եռանդուն նժոյգ՝ ընկած գետնաքարշ առաջին շարքում, կը դառնաս կամուրջ այդ գարշ ու գծուծ վերջապահներին, եւ քո վրայով նրանք կը վազեն, քեզ կը տրորեն բիրտ սմբակներով։ Նրանց գործն այժմեան թէեւ աւելի նուազ փայլ ունի, քան քոնն անցեալում, պիտ գերազանցի քո սխրանքները, զի ժամանակը խիստ դաստիարակուած տանտիրոջ նման գնացող հիւրի Ձեռքն անփութօրէն սեղմում է շեմքին եւ բազուկներն է այնպէս տարածում նոր հիւրի առաջ, կարծես ուզում է խենթօրէն թռչել։ Ողջոյն ենք յղում՝ ժպիտը դէմքին, հրաժեշտ տալիս սաստիկ տխրագին։ Երբեք մի՛ յուսա վարձատրութիւն անցեալիդ համար, զի ժամանակը՝ անչափ զրպարտող ու չարանախանձ, իր իշխանութեան ներքոյ է պահում գեղեցկութիւնը, բարձր ծնունդը, խելքը եւ ուժը, սէրն ու քնքշանքը, գութն ու սխրանքը, բարեկամութիւնը։ Բնութեան մի կարգ հարազատութեան ճամփայ է բացում բիւր մարդկանց համար, երբ միահամուռ օրհնում են նրանք նորածին մանր զարդարանքները, թէեւ անցեալի դրոշմներ ունեն։ Ոսկեպատ ցեխը գերադասում են ցեխապատ ոսկուց, եւ նոր հայեացքը գայթակղւում է նոր առարկայով, եւ դու, մեծանուն ու կատարեալ այր, Օ՛, մի՛ զարմանայ, որ բոլոր յոյներն սկսեն պաշտել յիմար այաքսին, չէ՞ որ շարունակ նա շարժման մէջ է։ ցնծութեան ճիչով քո բախտն են օրհնել, եւ այդ ճիչերը քեզ չեն լսելու, թէ քեզ չթաղես ինքդ կենդանի եւ քո վրանում ընդմիշտ չփակես բարի անունդ։ Ո՞ւմ, եթէ ոչ քո քաջութիւնն անմահ մեր աստուածների նախանձը շարժեց վերջին մարտերում, եւ քեզ ախոյեան մեծ մարսը դարձաւ։

ACHILLES.

Իմ առանձնութիւնն ունի խիստ պատճառ։

ULYSSES.

Բայց, այնուհանդերձ, շատ պատճառներ կան, որ թոյլ չեն տալիս առանձնանալու։ Բոլորն էլ գիտեն, որ դու սիրում ես պրիամոսի աղջկան։

ACHILLES.
Բոլորը՞ գիտեն։

ULYSSES.
Դու զարմանո՞ւմ ես։ Գիտցիր, աչալուրջ ամէն տէրութիւն տեսնում է ոսկեայ յունդը պլուտոնի եւ անչափելի խորութիւնների յատակն է գտնում, նա թափանցում է աստուածների պէս ծածուկ մտքերի օրօրոցն անխօս։ Տէրութեան հոգում կայ խորհրդաւոր ինչ-որ մի գաղտնիք, որ պատմութիւնը մինչեւ իսկ այսօր չի բացայայտել, եւ ոչ մի աստուած, ոչ մի շունչ ու միտք չի կարողանում գաղտնիքը մեկնել։ Աքիլլես, գիտցիր, բոլոր կապերդ տրովադայի հետ այսօր անխտիր մեզ են առնչւում, պատշաճութիւնը թելադրում է յաղթել հեկտորին, քան պոլիքսենէին։ Ա՜խ, կը վշտանայ ջահէլ պիռուսը, երբ հնչեցնի մեր կղզու վրայ շեփորի լուրը, եւ յոյն աղջիկներն սկսեն երգել, որ մեծ հեկտորի քոյրն աքիլլեսի սիրտն է գրաւել, բայց մեր այաքսի ձեռքով է ընկել հեկտորը ջահէլ։ Դեհ, մնաս բարով, քեզ հետ խօսեցի որպէս բարեկամ։ ջարդիր սառոյցը, որի վրայով յիմարն է սահում։ [Exits.]

PATROCLUS.
Միթէ՞, աքիլլես, այս նոյն բառերը քեզ չէի ասում։ Անամօթ կինը՝ տղամարդկային շարժուձեւերով, այնքան նողկալի ու զզուելի չէ, որքան իգացեալ, թոյլ տղամարդը գործի ժամանակ։ Կարծում են, որ իմ փոքրիկ հակումը դէպ պատերազմը եւ քո մեծ սէրը նուաստիս հանդէպ կասեցնում են քեզ։ Վե՛ր թռիր ընդոստ, եւ կուպիդոնը հեշտասէր ու մեղկ իսկոյն կ՝արձակի քո պարանոցի սիրոյ թեւերը, եւ դու կը փրկուես, ինչպէս առիւծի բաշը ցօղերից։

ACHILLES.
Միթէ՞ այաքսը ուզում է կռուել քաջ հեկտորի հետ։

PATROCLUS.
Այո՛, թերեւս նա փառաբանուի։

ACHILLES.
Իրաւ, տեսնում եմ, որ իմ պատիւը վտանգի մէջ է։ Փառքս է կարծես թէ նրբօրէն խոցւում։

PATROCLUS.
Օ՛, զգուշացիր, երբ մարդն է իրեն վէրքեր հասցնում, ապաքինւում է խիստ դժուարութեամբ։ Անհոգութիւնն է վաւերացնում լիազօրութիւնն ամբողջ վտանգի, եւ այդ վտանգը՝ որպէս մի ջերմախտ, աննկատելի վարակում է մեզ, երբ նոյնիսկ անգործ տաքանում ենք մենք բարկ արեւի տակ։

ACHILLES.
Ազնիւ պատրոկլէս, կանչիր, թող այստեղ թերսիդեսը գայ, ես մի խնդրանքով պէտք է ուղարկեմ նրան այաքսի մօտ, որ տրոյացոց մեծ իշխաններին հրաւիրի այստեղ, բայց մարտից յետոյ, առանց զէնք-զրահ։ Թող սա կանացի ցանկութիւն լինի, բայց ես տենչում եմ հեկտորին տեսնել իր տան հագուստով, երես առ երես նրա հետ խօսել, բայց դու մի գնա նրա ետեւից։

THERSITES.
[Entering.] Այ քեզ հրա՛շք։

ACHILLES.
Ի՞նչ է պատահել։

THERSITES.
Այաքսը գնում-գալիս է դաշտով մէկ, ինքն իրեն հարցեր տալիս։

ACHILLES.
Ինչո՞ւ։

THERSITES.
Նա վաղը պէտք է մենամարտի հեկտորի հետ։ Եւ այնպէս է նախօրօք

հպարտանում այդ տուրուդմփոցով, որ մոլեգնաբար զառանցում է։

ACHILLES.
Ինչպե՞ս թէ։

THERSITES.
Այո՛, նա սիրամարգի պէս մերթ հսկայաքայլ նետւում է առաջ, մերթ կանգնում, որոճում է գինեվաճառուհու պէս, գլուխը լցրած ինչ-որ հաշիւներ՝ մտախոհ կրծում է շուրթերը, կարծես ուզում է ասել, թէ գլուխը խելքի տաճար է։ Այո՛, բայց այնպիսի տաճար, ինչպէս կրակը կայծքարի վրայ, որ առանց հարուածելու չես կարող տեսնել։ Այս մարդը յաւիտենապէս կորած է, որովհետեւ, եթէ հեկտորը նրա ողնաշարը չջարդի կռւում, նա կը կործանի իրեն սնափառութիւնից։ Նա ինձ բոլորովին չի ճանաչում։ Ես ասում եմ։ *«Բարի լոյս, այաքս»,* իսկ նա պատասխանում է։ *«Շնորհակալութիւն, ագամեմնոն»։* Ի՞նչ ես մտածում այս մարդու մասին, որն ինձ դնում է զօրավարի տեղը։ Նա ասես լինի ցամաքի Ձուկ, անլեզու հրէշ։ Գրողը տանի հասարակաց կարծիքը։ Մարդ սա կարող է կրել դրսից ու ներսից, ինչպէս կաշուէ բաճկոնը։

ACHILLES.
Թերսիդես, դու պէտք է լինես իմ դեսպանը նրա մօտ։

THERSITES.
Ո՞վ, ե՞ս։ Ինչո՞ւ։ Նա ոչ ոքի չի պատասխանում, հրապարակաւ չի խոստովանում, խօսում է միայն աղքատների հետ։ Նրա լեզուն իր Ձեռքի վրայ է։ Թող պատրոկլէսը ինձնից պահանջի, ես կը ներկայացնեմ նրա կերպարանքը, եւ դուք կը տեսնէք կենդանի այաքսին։

ACHILLES.
Ուրեմն, պատրոկլէս, գնա եւ նրան ասա, որ ես խոնարհաբար խնդրում եմ քաջասիրտ այաքսին, որ նա ամենակտրիճ հեկտորին հրաւիրի իմ վրանը՝ առանց զէնք ու զրահի եւ վեհանձն ու մեծաշուք, վեց-եօթ անգամ փառաբանուած յոյների

զօրքի հրամանատար զօրավար ագամեմնոնից. նրա համար հոգայ անվտանգ առաջնորդութիւն։ Դեհ, գործիր։

PATROCLUS.
Արամազդ, օրհնիր մեծն այաքսին։

THERSITES.
Հը՛մ։

PATROCLUS.
Ես եկել եմ փառապանծ աքիլլեսի կողմից։

THERSITES.
Ա՛։

PATROCLUS.
Եւ խոնարհաբար խնդրում եմ քեզ, որ դու հեկտորին հրաւիրես նրա վրանը։

THERSITES.
Հը՛մ։

PATROCLUS.
Եւ ագամեմնոնից հոգաս անվտանգ առաջնորդութիւն։

THERSITES.
Ագամեմնոնի՞ց։

PATROCLUS.
Այո՛, տէր իմ։

THERSITES.
Ա՛։

PATROCLUS.
Ի՞նչ կ՝ասես սրան։

THERSITES.
Ամբողջ հոգով՝ աստուած քեզ հետ։

PATROCLUS.
Սը՛ր, ինձ հարկաւոր է քո պատասխանը։

THERSITES.
Վաղուայ օրից է կախուած. տասնմէկի մօտ ամէն ինչ պարզ կը լինի։ Ինչ էլ որ լինի, նա ինձ թանկ կը վճարի։

PATROCLUS.
Սը՛ր, ինձ հարկաւոր է քո պատասխանը։

THERSITES.
Ամբողջ հոգով քեզ ցանկանում եմ յաջողութիւն։

ACHILLES.
Միթէ՞ նա այսպէս լարուած է։

THERSITES.
Ոչ, նա լարից ընկած է։ Ես չգիտեմ, թէ ինչ երաժշտութիւն կը լսուի, երբ հեկտորը նրա ուղեղին հարուածի։ Հաւանաբար՝ մի զռռոց, երբ ապոլլոնը նրա ջղերը ջութակի լար դարձնի։

ACHILLES.
Լաւ, անմիջապէս մի նամակ ուղարկիր նրան։

THERSITES.
Աւելի լաւ կը լինի նամակն ուղարկել նրա Ձիուն։ Սա խելօք է նրանից։

ACHILLES.
Պղտոր ջրի պէս մտքերս են մռայլ, ինքս էլ չեմ տեսնում յատակը նրանց։

[Achilles and Patroclus exit.]

THERSITES.
Ես կ՝ուզէի, որ քո մտքերի աղբիւրը պարզուէր, որ էշս կարողանար այնտեղից ջուր խմել։ Աւելի լաւ է լինել ոչխարի ոջիլ, քան թէ այսպիսի մի քաջ յիմար։ [exit.]

][][

ACT IV. SCENE I.

Troy. Street. On one side Aeneas and his Servant with a torch enters; at another, Paris, Deiphobus, Antenor, Diomedes and Others also enter, also with torches.

PARIS.

Հէ՛յ, ո՞վ է գալիս։

DEIPHOBUS.

Իշխան Էնէասը։

AENEAS.

Միթէ՞ իմ առջեւ պարիսն է կանգնած։ Թէ քո բախտի պէս ինձ բախտը ժպտար՝ անձնատուր լինել գրգանքին անվերջ, ոչ ոք չէր կարող ինձ յափշտակել իմ հոմանուհու կրքոտ անկողնուց, բացի երկնքից։

DIOMEDES.

Նոյնն է կարծիքս։ Բարի առաւօտ, իշխան Էնէաս։

PARIS.

Էնէաս, մեկնիր Ձեռքդ քաջ յոյնին, վկայ՝ սեփական խօսքիդ ընթացքը, պատմիր, թէ ինչպէս մի ամբողջ շաբաթ դիոմեդեսը հետապնդում էր քեզ ռազմի դաշտում։

AENEAS.

Ողջոյն, քեզ կտրիճ։ քո բախտից հիմա զինադադար է, բայց երբ հանդիպեմ քեզ ռազմի դաշտում, կռուի հրաւէրն այնպիսի մռայլ հայեացք կ՝ունենայ, ինչպիսին միայն կարող է խորհել սիրտը մարդկային։

DIOMEDES.

Ե՛ւ մէկը, ե՛ւ միւսն ընդունում եմ ես, հիմա մեր արիւնն հոսում է հանդարտ, եւ ցանկանում եմ քեզ երջանկութիւն, բայց եթէ նորից ծագի մի կռիւ, կամ մի առիթ գայ, Օ՛, զեւսը վկայ, ես որսկանի պէս իմ ամբողջ ուժով ու ճարտարութեամբ ես կը

խոյանամ քո կեանքի վրայ։

AENEAS.

Գիտցիր, կ՝որսաս այնպիսի առիւծ, որ ցատկել գիտէ՝ դէմքը դէպի ետ։ Երդւում եմ հօրս՝ անքիզի կեանքով, ողջունում է քեզ գթասէր տրոյան, երդւում եմ քնքուշ վենուսի Ձեռքով, չկայ կեանքում դեռ մի մահկանացու, որ կարողանայ թշնամուն սիրել ինձ պէս խենթօրէն եւ տենչայ նրա մահը մոլեգին։

DIOMEDES.

Յաւակցում եմ քեզ։ Օ՜, թող, իւպիտեր, Էնէասն ապրի, ապրի արեւի մէկ հազար լրիւ շրջապտոյտը, թէ նրա մահով չի փառաբանուի իմ խիզախ սուրը, բայց եթէ նրան բախտ է վիճակուել իմ չարանախանձ պատուի հետ կռուել, թող վաղը մեռնի։

AENEAS.

Մենք մէկս մէկու լաւ ենք ճանաչում։

DIOMEDES.

Դեռ աւելի լաւ պիտի ճանաչենք։

PARIS.

Ես դեռ չեմ տեսել մի բարի ողջոյն՝ չարութեամբ լեցուն, եւ մի ազնիւ սէր՝ ատելի այսքան։ Իշխան Էնէաս, ի՞նչն է քեզ այսպէս վաղ արթնացրել։

AENEAS.

Արքան կանչել է, բայց ինչու՝ չգիտեմ։

PARIS.

Նա քո ցանկութեան ընթացքն է կանխում. դու պարտաւոր ես այս յոյնին տանել կալքասի տունը եւ յանձնել նրան չքնաղ կրեսիդային։ Գնանք միասին։ Գուցէ ուզո՞ւմ ես մեզանից առաջ այնտեղ շտապել։ Կասկածում եմ ես։ Բայց ոչ, ես

գիտեմ, որ իմ եղբայրը այնտեղ է հիմա։ Արթնացրու նրան եւ մեր ժամանման մասին հաղորդիր, բայց, հաւանաբար, մեզ չի ընդունի այնտեղ սիրալիր։

AENEAS.
Այո՛, ի հարկէ։ Նա աւելի շուտ յոյներին կը տայ ամբողջ տրոյան, քան թէ տրոյայից կ՝առնի կալքասի չքնաղ աղջկան։

PARIS.
Այժմ ի՞նչ անել, երբ ժամանակի դառն բնոյթն է այսպէս կամենում։ շտապիր, մենք քո ետեւից կը գանք։

AENEAS.
Մնացէք բարեաւ։

[Aeneas and Servant exit.]

PARIS.
Ասա, իմ ազնիւ, քաջ դիոմեդես, ինչպէս կ՝ասէիր ճշմարիտ հոգով քո բարեկամին. ո՞ւմ է արժանի չքնաղ հեղինէն, ին՞ձ, թէ՞ մենելաոսին։

DIOMEDES.
Երկուսիդ, իշխան։ Նրան, քանզի նա, անպատուութիւնը արհամարհելով, գերի դժոխքի այրող ցաւերին ու տառապանքին, աշխարհին ստրուկ, ջանում է նրան վերադարձնել։ քեզ, որ Զգտում ես նրան պաշտպանել՝ կորցնելով, աւա՜ղ, քո քաջակորով բարեկամներին, դեռ չճաշակած նրա անսահման անպատուութիւնը։ Նրան, քանզի նա՝ որպէս կնախաբ լացկան տղամարդ, կ՝ուզենար ըմպել անհամ գաւաթի դիրտն ու մրուրը։ քեզ՝ հեշտասէրիդ՝ կ՝ուզենար ծնել մեղքի արգանդից բազում ծառաներ։ Եթէ նժարեն, նոյն կշիռն ունէք, երկուսդ էլ ծանր էք անառակութեամբ։

PARIS.

Չափից աւելի դու ծանր ես խոցում համաերկրացուդ։

DIOMEDES.

Նրա պիղծ արեան ամէն մի կաթիլ, որ վազ է տալիս նրա անառակ երակների մէջ, խլել է յոյնի գեղեցիկ մի կեանք, եւ ապականեալ գիշակեր մարմնի ամէն մի բեկոր քաջ տրոյացու մահով է լեցուել։ Այն օրից ի վեր, ինչ նա բարբառեց, նրա շուրթերը չասացին այնքան բարեգութ բառեր, որքան բարեգութ սրտեր զոհուեցին։

PARIS.

Լսիր, դիոմեդես, ասես թէ լինես ծերուկ փերեզակ, դու այն ապրանքի գինն ես մեռցնում, որ աչք ես դրել։ Բայց մենք չենք գովում ապրանքը երբեք՝ ճիշտ ըմբռնելով նրա արժէքը։ Գնանք, սիրելիս։ [Exits.]

][][

ACT IV. SCENE II.

Troy. the court of Pandarus' House. Troilus and Cressida enter.

TROILUS.

Լոյսը բացւում է, ցուրտ է, սիրելիս, տուն վերադարձիր։

CRESSIDA.

Օ՛, իմ սիրելիս, իմ հօրեղբօրը կը կանչեմ ներքեւ, եւ նա կը բացի դարպասի դուռը։

TROILUS.

Օ՛, պէտք չէ նրան անհանգստացնել։ Դէպի անկողին, դէպի անկողին, թող քունը փակի քո գեղեցկաշուք այս թարթիչները։ Եւ թող ընկղմուեն զգացմունքներդ գիրկը մոռացման, ինչպիսին մանկան մտքերն են անհոգ։

CRESSIDA.
Բայց քեզ, սիրելիս, բարի առաւօտ։

TROILUS.
Աղաչում եմ քեզ՝ դէպի անկողին։

CRESSIDA.
Գուցէ ինձանից Ձանձրանո՞ւմ ես դու։

TROILUS.
Օ՛, իմ կրեսիդա, եթէ արտոյտի թաւշեայ դայլայլը քնից չհանէր յոգնաբեկ օրուան, եւ չկռաւէին լիրբ ագռաւները, եւ եթէ գիշերն իր քնքուշ քօղը ծածկէր մեր սրտի ուրախութիւնը, քեզ չէի թողնի այստեղ միայնակ։

CRESSIDA.
Գիշերն եղաւ կարճ։

TROILUS.
Ասես նա լինի անիծեալ վհուկ, որ չարագործին տանջում է դանդաղ՝ տարտարոս դարձած, իսկ սիրոյ գրկից ջանում է թռչել աւելի արագ, քան թէ կարող է թեւաւոր միտքը։ Բայց դու կը մրսես, գնա, սիրելիս։

CRESSIDA.
Ա՛խ, քիչ էլ մնա։ Դուք՝ տղամարդիկ, շտապում էք միշտ։ Օ՛, յիմար կրեսիդա, նա պիտ յապաղէր, թէ չշտապէիր։ Լսո՞ւմ ես, ինչ-որ մէկն է բարձրանում։

PANDARUS.
[From the depths of the stage.] Ինչո՞ւ են բոլոր դռներն այսպէս բաց։

TROILUS.
Քո հօրեղբայրն է։

CRESSIDA.
Ժանտամահ նրան։ Նա պիտի հեգնի իր ամբողջ կեանքում։

PANDARUS.
[Entering.] Ինչպէ՞ս է զգում իրեն կուսութիւնդ։ Լսիր, չքնաղ կոյս, որտե՞ղ է եղբօրս աղջիկը՝ կրեսիդան։

CRESSIDA.
Վերջ տուր, հօրեղբայր, քո չար հեգնանքին։ Դու ինձ բերեցիր հասցրիր այստեղ, եւ այժմ ի՞նքդ ես փորձում ծաղրել ինձ։

PANDARUS.
Հասցրի՞ այստեղ։ Ինչի՞ հասցրի, թող նա ասի ինձ։ Դեհ, ասա, ես քեզ ինչի՞ հասցրի։

CRESSIDA.
Վերջ տուր բառերիդ, ով նզովեալ սիրտ, ինքդ մի բան չես, բայց ուրիշներից կառչում ես անվերջ։

PANDARUS.
Հա-հա՛, իմ խղճուկ յիմարիկ։ Այս գիշեր չկարողացա՞ր քնել։ Չթողե՞ց անպիտանը, որ դու քնէիր։ Նրան սատանայ դարձրիր։

[They knock on the door.]

CRESSIDA.
Ես կ՝ուզենայի ճիշտ այսպէս գլխիդ հարուածներ տեղալ։ Ո՞վ է, հօրեղբայր, դռան մօտ, նայիր։ Գնանք, սիրելիս, գնանք սենեակս։ Դու ծաղրո՞ւմ ես ինձ՝ ժպիտը դէմքիդ, միթէ՞ վատ բան եմ քեզ առաջարկում։

TROILUS.
Հա-հա՞։

CRESSIDA.
Օ՛, ոչ։ Այդպիսի բան չեմ ակնարկում։ Նորից հարուածում են դուռը։ Ի՞նչ թախանձանոք դուռն են հարուածում։ խնդրեմ, ներս մտէք, ես չեմ վախենում քեզ տեսնել այստեղ։

PANDARUS.
Ո՞վ է, ի՞նչ է ուզում։ Այսպէս որ գնայ, դուռն էլ կը ջարդի։ Ի՞նչ է պատահել, ի՞նչ ես կամենում։

AENEAS.
[Entering.] Բարի առաւօտ, բարի առաւօտ։

PANDARUS.
Ո՞վ է, Էնէա՞ս։ Օ՛, աստուած վկայ՝ չճանաչեցի։ Այսպէս վա՞ղ։ Ի՞նչ լուր։

AENEAS.
Իշխան տրուլոսն այստեղ չէ՞, պարոն։

PANDARUS.
Նա այստեղ ի՞նչ գործ պէտք է ունենար։

AENEAS.
Այստեղ է, գիտեմ, պէտք չէ թաքցնել։ Իմ հանդիպումը օգուտ է նրան։

PANDARUS.
Ասում ես՝ այստե՞ղ է։ Այս մէկը ես չգիտեմ։ Արեւս վկայ՝ ես նոր եկայ։ Բայց նա ինչո՞ւ պէտք է այստեղ լինէր։

AENEAS.
Նա՞։ Վերջացրու։ Նրան թաքցնելով՝ նրան մեծ վնաս կը հասցնէք։ Այս անգամ դաւաճանութիւնը նեցուկ է կանգնելու ճշմարտութեանը։ Թէեւ դու չգիտես, որ նա այստեղ է, բայց գնա ու նրան այստեղ բեր։ Գնա։

TROILUS.
[Entering.] Ի՞նչ է պատահել։

AENEAS.
Օ՛, ազնիւ իշխան, սուղ ժամանակն ստիպում է ինձ, որ պատշաճօրէն քեզ չողջունեմ։ քո եղբայր պարիսն ինձ է հետեւում, մօտ են դեյֆոբոսը, դիոմեդեսը եւ անթենորը, որ գերութիւնից վերադարձել է։ Նախքան առաջին զոհաբերումը մենք պէտք է յանձնենք դիոմեդեսին կրեսիդային։

TROILUS.
Սա՞ է վճիռը։

AENEAS.
Նման վճիռ է տրոյան արձակել պրիամոսի հետ։ Նրանք գալիս են, որ այդ վճիռը ի կատար ածեն։

TROILUS.
Ինչպէ՜ս է իմ բախտը ինձ արհամարհում։ Ես պէտք է գնամ նրանց ընդառաջ։ Բայց դու, Էնէաս, կ՝ասես, որ այստեղ մենք հանդիպել ենք պատահականօրէն։

AENEAS.
Շատ բարի, իշխան։ Օ՛, մայր բնութեան բիւր գաղտնիքները չեն կարող լինել ինձ պէս լռակեաց։

[Troilus and Aeneas exit.]

PANDARUS.
Խելքի մօտ բա՞ն է՝ հէնց նոր Ձեռք բերեց, բայց տանուլ է տալիս։ Սատանան տանի անթենորին։ Երիտասարդ իշխանը խելքը կը թռցնի։ Ժանտախտի բաժին դառնաս, անթենոր։ Ես կ՝ուզէի, որ նրանք ջարդէին նրա վիզը։

CRESSIDA.
[Entering.] Ի՞նչ է պատահել, նոր ո՞վ կար այստեղ։

PANDARUS.
Ա՜խ, ա՜խ։

CRESSIDA.
Ի՞նչ ես հառաչում այսպէս տխրագին։ Որտե՞ղ է տէրն իմ։ Միթէ՞ նա գնաց։ Ասա, հօրեղբայր, ի՞նչ է պատահել։

PANDARUS.
Երանի թէ մտնէիր գետնի տակ։

CRESSIDA.
Վա՜յ ինձ, աստուածներ։ Ի՞նչ է պատահել։

PANDARUS.
Աղաչում եմ քեզ, մտիր սենեակդ։ Երանի ծնուած չլինէիր։ Ես գիտեմ, դու պէտք է դառնաս նրա մահուան պատճառը։ Օ՜, խեղճ պատանի։ Ժանտախտի բաժին դառնաս, անթենոր։

CRESSIDA.
Բարի հօրեղբայր, աղերսում եմ քեզ ահա ծնրադիր, ի՞նչ է պատահել։

PANDARUS.
Աղջիկս, դու պէտք է այստեղից գնաս, պէտք է գնաս։ քեզ փոխանակել են

անթենորի հետ։ Դու պէտք է գնաս հօրդ մօտ ու բաժանուես տրուլոսից։ Սա նրա համար մահ է, կործանում։ Նա չի կարող այս ամէնը տանել։

CRESSIDA.
Օ՛, իմ աստուածներ, չեմ գնայ երբեք։

PANDARUS.
Դու պէտք է գնաս։

CRESSIDA.
Օ՛, ոչ, հօրեղբայր։ Ես մոռացել եմ հարազատ հօրս, ես չեմ ճանաչում ո՛չ ազգակցութիւն, ո՛չ արիւն, ո՛չ սէր, ոչ ոք իմ հոգուն այնպէս մօտիկ չէ, ինչպէս տրուլոսը։ Օ՛, դուք աստուածներ, հիւսէք իմ անուամբ պսակ նենգութեան, եթէ ես լքեմ իմ տրուլոսին։ Օ՛, դու ժամանակ, բռնութիւն ու մահ, եթէ կարող էք, տանջէք մարմինն այս, բայց սիրուս շեմքի հիմերն են ամուր, ինչպէս կենտրոնը այս երկրագնդի, որ ամենայն ինչ ձգում է իրեն։ Ես ներս կը գնամ ու կ՝ողբամ լուռ։

PANDARUS.
Օ՛, գնա՛, գնա՛։

CRESSIDA.
Ես պիտի պոկեմ փայլուն մազերս, ճանկռեմ այտերս եւ մաքուր ձայնս խզեմ խորախոր հեծկլտանքներով, թող ես բզկտեմ սիրտս՝ կանչելով տրուլոս, իմ տրուլոս, բայց ոչ, չեմ լքի երբեք տրոյան։ [Exits.]

][[

## ACT IV. SCENE III.

Troy. street before pandarus' house. Paris, Troilus, Aeneas, Deiphobus, Antenor and Diomedes all enter.

### PARIS.

Լոյսը բացուել է, եւ ժամն է արդէն նրան յանձնելու այս խիզախ յոյնին։ Սիրելի եղբայր, գնա ու չքնաղ լէդիին ասա՝ ինչ է անելու, եւ թող շտապի։

### TROILUS.

Ներս մտէք, խնդրեմ։ Նրան կը բերեմ, կը յանձնեմ յոյնին։ Բայց դու իմացիր, որ քո եղբայրը ազնիւ քուրմի պէս սեփական սիրտն է ողջակէզ բերում զոհասեղանին։ [Exits.]

### PARIS.

Ես գիտեմ, եղբայր, թէ ինչ է սէրը, ես քեզ խղճում եմ, բայց անկարող եմ քեզ նեցուկ լինել։ Ներս մտէք, խնդրեմ, իմ քաջ իշխաններ։ [Exits.]

][][

## ACT IV. SCENE IV.

Troy. Pandarus' House. Pandarus and Cressida enter.

### PANDARUS.

Զսպիր քո վիշտը, զսպիր, սիրելիս։

### CRESSIDA.

Ինչպէ՞ս կարող եմ իմ վիշտը զսպել, երբ նա ուժեղ է, կատարեալ ու խոր, ինչպէս որ նրա ծնունդն անողոք։ Թէ կարենայի իմ սէրը զսպել կամ նրան նայել անհոգ զգացմամբ, այնժամ իմ վիշտը ես կ՝ամոքէի։ Բայց ո՛չ, իմ սէրը, ո՛չ էլ իմ վիշտը չեն կարող, գիտցիր, երբեք հանդարտուել, քանզի կորուստը մեծ է, թանկագին։

PANDARUS.
Ահա, ահա, ահա գալիս է նա։

[Troilus enters.]

PANDARUS [cont.]
Ա՛խ, անուշիկս։

CRESSIDA.
Օ՛, տրուլոս, տրուլոս։

[She hugs him]

PANDARUS.
Ի՜նչ հրաշալի զոյգ է։ Թոյլ տուր՝ ես էլ համբուրեմ։ *«Օ՛, սիրտ»,* ինչպէս ասում են գեղեցիկ բանաստեղծութեան մէջ, Օ՛, սիրտ իմ, սիրտ իմ, ինչո՞ւ ես տխուր, ինչո՞ւ ես այսպէս խորունկ հառաչում։ Սիրտն անմիջապէս պատասխանում է. քանզի չես կարող իմ վիշտն ամոքել ո՛չ բարի խօսքով, ո՛չ քար լռութեամբ։ Ինչքա՜ն ճշմարտութիւն կայ այս բանաստեղծութեան մէջ։ Ամէն դատարկ բան պիտանի է, որովհետեւ մենք կարող ենք այնքան ապրել, որ նման բանաստեղծութեան կարիքը զգանք, ինչպէս տեսնում ենք այժմ։ Ինչպէ՞ս ես, գառնուկս։

TROILUS.
Չքնաղ կրեսիդա, ես սիրում եմ քեզ այնպէս մաքրօրէն, որ աստուածները, ասես զայրացած իմ անկեղծ սիրուց, նախանձում են ինձ։ ջերմեռանդի աղօթքները տաք սառն են աւելի, քան թէ իմ սիրոյ կրակն հրաբորբ, եւ դրա համար խլում են ինձնից աստուածները քեզ։

CRESSIDA.
Աստուածներն է՞լ են արդեօք նախանձում։

PANDARUS.
Այո՛, եւ ինչպէ՜ս։

CRESSIDA.
Ուրեմն, պէտք է տրոյան լքեմ։

TROILUS.
Աւա՜ղ, ատելի ճշմարտութիւն է։

CRESSIDA.
Տրուլոսի՞ն նոյնպէս։

TROILUS.
Ե՛ւ տրովադան, ե՛ւ տրուլոսին։

CRESSIDA.
Անհնարին է։

TROILUS.
Աւա՜ղ, այսպէս է, ու թշնամական ճակատագիրը չի թողնում նոյնիսկ հրաժեշտ տալ մեզ, եւ դաժանութեամբ խափանում է նա ամէն սպասում։ Եւ նա բրտօրէն չի թողնում՝ հիւսուեն մեր շուրթերն իրար, եւ հզօրապէս մեզ արգելում է՝ միմեանց գրկելու, ու մեր սեփական շնչից արձակուած հառաչանքներն է հեղձամահ անում։ Միմեանց գնելով բիւր հազարաւոր հառաչանքներով՝ մեզ պէտք է ծախենք խղճալի, դաժան, կարճ ժամանակով, որ հազիւ բաւէ մէկ հառաչանքի։ Գողի փութանոք՝ ժամանակն անխիղճ, նետելով մի կողմ իր աւարն հարուստ, մեր հառաչները, մեր համբոյրները, մեր երդումները, որ շատ են, բազում, քան աստղերն երկնի, յանձնում է մի կարճ մնաս բարովի եւ թողնում է մեզ մի քաղցած համբոյր՝ համեմուած աղի, դառն արցունքով։

AENEAS.
[From the depths of the stage.] Տրուլոս, լէդին պատրա՞ստ է արդէն։

TROILUS.
Ա՜խ, կանչում են քեզ։ Ասում են՝ այսպէս հանճարն է կանչում այն մարդուն, ով պիտ մահանայ վերուստ։ Բայց ասա նրանց՝ մի քիչ համբերեն։

PANDARUS.
Որտե՞ղ են իմ արցունքները։ Անձրեւեցէք, արցունքներ, որ հանդարտուի այս փոթորիկը, ապա թէ ոչ՝ իմ սիրտն արմատահան կ՚անի։ [Exits.]

CRESSIDA.
Ուրեմն, գնում եմ ես յոյների մօտ։

TROILUS.
Ուրիշ ելք չկայ։

CRESSIDA.
Տխուր կրեսիդա եւ ուրախ յոյներ։ Ե՞րբ ենք, սիրելիս, նորից տեսնելու։

TROILUS.
Դու հաւատարիմ մնա, սիրելիս։

CRESSIDA.
Ի՞նչ, հաւատարի՞մ։ Միթէ՞ չար կասկածն այրում է սիրտդ։

TROILUS.
Ոչ, ոչ, սիրելիս, պէտք չէ տրտնջալ, քանզի բաժանման ժամն է մօտալուտ։ Ասացի՝ մնա ինձ հաւատարիմ ո՜չ նրա համար, որ կասկածում եմ։ Պատրաստ եմ Ձեռնոց նետելու մահին՝ քո ազնիւ հոգու մաքրութեան համար։ Ես ուզում էի ասել՝ դու մնա ինձ հաւատարիմ, եւ կը տեսնեմ քեզ։

CRESSIDA.
Օ՛, իմ սիրելիս, պէտք չէ վտանգին ընդառաջ գնալ, ես մնում եմ քեզ միշտ հաւատարիմ։

TROILUS.
Հոգ չէ, վտանգին ես կ՝ընկերանամ, այս թեզանիքը սրբօրէն պահիր։

CRESSIDA.
Իսկ դու՝ Ձեռնոցս, բայց դու ինձ ասա, ե՞րբ կը տեսնուենք։

TROILUS.
Յոյն ժամապահին գլխից կը հանեմ եւ ամէն գիշեր քեզ այցի կը գամ, միայն թէ մնա ինձ հաւատարիմ։

CRESSIDA.
Օ՛, երկինք, դարձեալ ասում է՝ մնա ինձ հաւատարիմ։

TROILUS.
Լսիր, սիրելիս, թէ ես ինչու եմ այս բառերն ասում, յոյն տղաները լեցուն են բազում արժանիքներով, նրանք սիրում են՝ բնութեան շռայլ Ձիրքերով օժտուած, որոնք զօրու են մեծ արուեստներով ու ճարտարութեամբ։ Ես վախենում եմ, որ քեզ կը դիւթի ամէն նորութիւն եւ նրանց անլուր գեղեցկութիւնը։ Այս կասկածն, աւա՜ղ, աղերսում եմ ես, կոչիր ազնիւ մեղք։

CRESSIDA.
Երկինքը վկայ, դու ինձ չես սիրում։

TROILUS.
Եթէ այսպէս է, թող մեռնեմ այստեղ խայտառակօրէն։ Ես կասկածում եմ ոչ թէ քո ազնիւ հաւատարմութեան, այլ իմ սեփական շնորհքի վրայ, քանզի չեմ կարող ես

լա-վոլտ պարել, խօսել քաղցրաբառ կամ կազմակերպել խորամանկ խաղեր, աստուած չի տուել ինձ ոչ մի շնորհ, որով հարուստ են յոյները այնքան, բայց ասում եմ ես, որ այս խաբուսիկ շնորհքների մէջ դարան է մտել մի խորհրդաւոր, համր սատանայ, որ ճարտարութեամբ խաբում է մարդուն։ Բայց քեզ չի խաբի։

CRESSIDA.
Եւ դու կարծում ես, որ ինձ կը խաբի՞։

TROILUS.
Ոչ, բայց երբեմն մենք անում ենք այն, ինչ չենք կամենում։ Եւ մենք դառնում ենք մեր իսկ սատանան, երբ փորձութեան ենք մենք առաջնորդում մեր թուլութիւնը՝ կարծելով, որ զայն կարող ենք սանձել մեր զօրութիւնով։

AENEAS.
[From the depths of the stage.] Բարի տրուլո՛ս։

TROILUS.
Դեհ, ինձ համբուրիր, մենք բաժանւում ենք։

PARIS.
[From the depths of the stage.] Եղբայր տրուլո՛ս։

TROILUS.
Ներս արի, պարիս։ քեզ հետ բեր յոյնին ու Էնէասին։

CRESSIDA.
Իսկ դու կը լինե՞ս ինձ հաւատարիմ։

TROILUS.
Ե՞ս, աւա՛ղ, սա է իմ թուլութիւնը եւ իմ յանցանքը։ Երբ ուրիշները խորամանկօրէն մեծ փառք են որսում, ես ճշմարտութեամբ հասնում եմ միայն մաքուր

պարզութեան։ Երբ ուրիշները նենգամտօրէն ոսկով են ներկում իրենց պղնձեայ, գորշ պսակները, ես ճշմարտութեամբ իմ թագն եմ կրում։ Դու մի կասկածիր ինձ վրայ երբեք, մաքուր է հոգիս, եւ սա է իմ ողջ հարստութիւնը։

[Aeneas, Paris, Antenor, Deephobus and Diomedes enter.]

TROILUS [cont.]
Օ՛, բարի գալուստ, խիզախ դիոմեդես, ահա կրեսիդան, որ տալիս եմ քեզ անթենորի դիմաց։ Դռան մօտ նրան ես քեզ կը յանձնեմ, եւ ճանապարհին ամէն ինչ կ՚ասեմ քեզ նրա մասին։ Աղերսում եմ քեզ, որ հետը վարուես քաղաքավարի, եւ, հոգիս վկայ, ով գեղեցիկ յոյն, եթէ երբեւէ գթութիւն հայցես իմ դաժան սրից, դու պէտք է նրա անունը կրկնես, այնժամ ապահով կը դառնայ կեանքդ, ինչպէս պրիամոսը՝ մեծ իլիոնի մէջ։

DIOMEDES.
Չքնաղ կրեսիդա, դեռ մի շտապիր շնորհակալութեան խօսքեր ասելու այս արքայորդուն, որ սպասում է։ Աչքերիդ փայլը եւ քո այտերի մաքուր երկինքը հաւատարմութեամբ դատդ են պաշտպանում։ Նա իր տիրուհուն տեսնում է քո մէջ, դու հրամայիր նրան լիովին։

TROILUS.
Ինձ հետ վարւում ես դու անչափ կոպիտ եւ անգոսնում ես իմ աղերսանքը՝ նրան գովելով։ Բայց քեզ ասում եմ, որ նա բարձր է քո գովեստներից, դու արժանի չես այդ գեղեցկուհու ծառան կոչուելու։ Ես պահանջում եմ, որ նրա հանդէպ լինես վայելուչ, թէ ոչ՝ վկայ է պլուտոնն ահեղ, թէկուզ քո անձին պահապան դառնայ մեծ աքիլլեսը, դարձեալ կը կտրեմ ես քո կոկորդը։

DIOMEDES.
Պէտք չէ, տրոյլոս, այսպէս տաքանալ։ Իմ դիրքն ու պաշտօնն ինձ թոյլ չեն տալիս ազատ խօսելու։ Եւ քաղաքից դուրս ոչ ոք չի կարող գործիս խառնուել։ Գիտցիր, ինձ համար քո պահանջները ոչ մի գին չունեն։ Նրա սեփական արժանիքները ինձ

կ՝առաջնորդեն՝ նրան յարգելու։ քո հրամանին իմ ամբողջ հոգով ես ասում եմ՝ ոչ։

TROILUS.
Գնանք դէպ դուռը, եւ դու, դիոմեդես, խօսքերիդ համար գլուխդ կը թաքցնես։
Ձեռքդ տուր, լէդի, մեր ճամփին նորից մենք պիտի խօսենք մեր ճակատագրից։

[Diomedes, Troilus and Cressida exit.]

PARIS.
Հեկտորի փողն է։

AENEAS.
Այո՛, այսպէս վաղ։ Հիմա հեկտորը ինձ կը կոչի ծոյլիկ։ Ես երդուել էի, որ դաշտ կը գնամ նրանից առաջ։

PARIS.
Անշուշտ, մեղաւորն իշխան տրուլոսն է, բայց գնանք, գնանք հեկտորի հետ դաշտ։

DEIPHOBUS.
Այո՛, մենք պէտք է շտապ պատրաստուենք։

AENEAS.
Եւ նոր փեսայի մի ջերմ եռանդով մենք հեկտորի հետ պիտ դաշտը թողնենք,
տրոյայի փառքը նրան է տրուած, եթէ նա կռուի քաջ ու անձնուրաց։

[All exit.]

][][

ACT IV. SCENE V.

The Grecian Camp. Ajax enters armed along with Agamemnon, Achilles, Patroclus, Menelaus, Ulysses and Nestor.

AGAMEMNON.

Այստեղ ես եկել դու առոյգ ու թարմ եւ դու զօրու ես ժամանակն հերքել ցնցող քաջութեամբ։ Դու, ահեղ այաքս, բարձրագոչ փողով արթնացրու տրոյան, թող վախկոտ օդը մեծ զօրավարի գլխին ծակ բանայ եւ կանչի նրան այստեղ՝ ռազմի դաշտ։

AJAX.

Ահա քսակն իմ, պատռիր, փողահար, քո պղնձափայլ փողն ու թոքերը, փչիր, անպիտան, փչիր ուժգնօրէն, թող քո կլորիկ այտերը ուռչեն, ինչպէս ակուիլոնն իր փորացաւից։ Դեհ, կուրծքդ լարիր, թող քո աչքերը լցուեն արիւնով, չէ՞ որ կանչում ես խիզախ հեկտորին։

ULYSSES.

Չեն պատասխանում։

ACHILLES.

Վաղ է չափազանց։

AGAMEMNON.

Դիոմեդեսը չէ՞, հետն էլ կալքասի սիրունիկ դուստրը։

ULYSSES.

Նա է, քայլուածքից ես ճանաչեցի։ Այնպէս է քայլում թաթերի վրայ, կարծես երկինք է թռչում իր ոգին։

[Diomedes and Cressida enter.]

AGAMEMNON.
Լէդի կրեսի՞դն է։

DIOMEDES.
Նոյն իսկ նա ինքը։

AGAMEMNON.
Չքնաղ կրեսիդա, քեզ անկեղծ ողջոյն յոյների կողմից։ [He kisses her.]

NESTOR.
Մեր զօրավարը քեզ ողջունում է անկեղծ համբոյրով։

ULYSSES.
Թէեւ համբոյրը խիստ անձնական է, բայց լաւ կը լինէր՝ բոլորիս համար։

NESTOR.
Հրաշալի խորհուրդ։ Ես սկսում եմ։ [He kisses her.] Այս ջերմ համբոյրը՝ նեստորի կողմից։

ACHILLES.
Գեղեցիկ լէդի, ես քո շուրթերից Ձմեռն եմ վանում։ [He kisses her.] Քեզ աքիլլեսն է այստեղ ողջունում։

MENELAUS.
Ես էլ մի չքնաղ էակ ունէի համբոյրի համար։

PATROCLUS.
Բայց դա չի ասում, որ դու կարող ես այժմ էլ համբուրել։ Լկտի պարիսը նետուել է այսպէս համբուրում է նրան։ Եւ բաժանել է քեզ քո էակից։

ULYSSES.
Ի՜նչ վիրաւորանք։ Նա ծաղրում է մեզ, մենք չենք խնայում մեր գլուխները, որ ոսկեզօծուի նրա եղջիւրը։

PATROCLUS.
Առաջին անգամ քեզ համբուրեցի մենելաոսի փոխարէն, լէդի։ [He kisses her.] Իսկ այս համբոյրը ինձ համար է միայն։

MENELAUS.
Լաւ է համբուրւում։

PATROCLUS.
Ես ու պարիսը միշտ համբուրում ենք նրա փոխարէն։

MENELAUS.
Օ՛, ո՛չ, այս անգամ ես եմ համբուրում, թոյլ տուէք, լէդի։

CRESSIDA.
Համբոյր ես տալի՞ս, թէ՞ ընդունում։

MENELAUS.
Երկուսն էլ, լէդի։

CRESSIDA.
Գրազ եմ գալիս իմ կեանքի գնով, համբոյրը, որ դու պէտք է ընդունես, աւելի տաք է, քան քոնը, պարոն, դրա համար էլ մի փոխանակիր։

MENELAUS.
Քո մէկի դիմաց երեքը կը տամ։

CRESSIDA.
Դու վատնող մարդ ես։

MENELAUS.
Ո՞վ է խնայողը։

CRESSIDA.
Պարիսը։ Չէ՞ որ դու ինքդ գիտես, որ նրա մեղքով դարձել ես վատնող։

MENELAUS.
Դու հարուածում ես ուղիղ ճակատիս։

CRESSIDA.
Երդւում եմ՝ ճիշտ չես։

ULYSSES.
Ոչ, եղունգներով չես կարող ճեղքել նրա եղջիւրը։ Սիրելի լէդի, կարո՞ղ եմ արդեօք մի համբոյր խնդրել։

CRESSIDA.
Այո՛, կարող ես։

ULYSSES.
Համբոյրդ եմ տենչում։

CRESSIDA.
Ուրեմն խնդրիր։

ULYSSES.
Ի սէր աստղիկի՝ մի համբոյր տուր ինձ, եթէ հեղինէն կոյս դառնայ նորից ու վերադառնայ գիրկը պարիսի։

CRESSIDA.
Քեզ պարտական եմ. պարտքս եմ վճարում ճիշտ ժամանակին։

ULYSSES.
Երբեք չես տեսնի այդ ժամանակը եւ իմ համբոյրը։

DIOMEDES.
Թոյլ տուր քեզ տանել, յանձնել քո հօրը։

NESTOR.
Կրակի կտոր է։

ULYSSES.
Պէտք չէ մեզ բնաւ։ Նրա աչքերը, շուրթերը, լեզուն, նոյնիսկ ոտքերը խօսում են անվերջ։ Եւ նրա մարմնի ամէն շարժման մէջ տեսանելի է հեշտասէր ոգին։ Օ՜, այս կենդանի արարածները՝ փափուկ լեզուի հետ, այնպէս ազատ են, որ աւելի շուտ ողջոյն են յղում պատեհութեանը, քան սա գալիս է, եւ լայնատարած իրենց մտքերի սեղանն են բացում այն մարդկանց առաջ, ովքեր ուզում են դիւրութեամբ կարդալ։ Ա՜խ, այս մտքերը բարեդիպութեան խղճուկ զոհերն են եւ զուարճանքի անհոգ դուստրերը։ Բեմի խորքից՝ փողի Ձայն։

EVERYONE.
Տրոյացիներն են։

AGAMEMNON.
Գալիս են նրանք։

[Hector, Aeneas and Troilus enter.]

AENEAS.

Ձեզ՝ հելլադայի տէրերից, ողջոյն։ Յաղթողը ինչո՞վ պէտք է մեծարուի։ Գուցէ ուզում էք, որ նրա անունն աշխարհին իմանայ, գուցէ քաջերը կռուեն մինչ ի մահ, կամ երբ որ հնչի շեփորը ուժգին, տուն վերադառնան։ Ահա թէ ինչ է հեկտորն ինձ ասել։

AGAMEMNON.

Իսկ ինչպէ՞ս կ՝ասէր ինքը՝ հեկտորը։

AENEAS.

Ինչ պայմաններ էլ որ առաջարկուեն։

ACHILLES.

Այլ կերպ չէր կարող հեկտորը ասել։ Սակայն ինչ հպարտ՝ բնաւ չի յարգում նա իր թշնամուն։

AENEAS.

Աքիլլեսը չե՞ս։ Անունդ ասա։

ACHILLES.

Օ՛, եթէ նա չեմ, ոչնչութիւն եմ։

AENEAS.

Այսպէս, ուրեմն, դու աքիլլեսն ես։ Բայց ով էլ լինես, գիտցիր, սիրելիս, որ խիզախութիւնն ու հպարտութիւնն երկու ծայրեր են քաջ հեկտորի մէջ։ Մէկն անսահման է, ինչպէս ամբողջը, իսկ միւսը՝ չնչին, ինչպէս ոչինչը։ Նրան լաւ կշռիր. այն, ինչ թւում է քեզ հպարտութիւն, ազնուութիւն է։ Այաքսի արեան կէսն հեկտորինն է, այդ սիրուց դրդուած՝ հեկտորի կէսը տանն է մնացել, եւ նա կէս-սրտով, կէս-ձեռքով հիմա մարտ է մղելու այս կէս-տրոյացու, կէս-յունացու դէմ։

ACHILLES.
Ուրեմն, կնոջ կռիւ պիտ լինի՞: Հասկանում եմ քեզ։ Վերադառնում է դիոմեդեսը։

AGAMEMNON.
Ահա գալիս է դիոմեդեսը։ քաջ ասպետ, անցիր այաքսի կողմը։ Դու փորձառու ես. էնէասի հետ որոշիր նրանց կռուի կարգն այստեղ։ Կռուե՞ն մինչ ի մահ, թէ՞ Ձեւացնեն. ախոյեանները ազգականներ են, դա կիսով չափ կը թեթեւացնի նրանց կռիւը։

[Ajax and Hector enter the arena.]

ULYSSES.
Նրանք կանգնել են արդէն դէմ դիմաց։

AGAMEMNON.
Ո՞վ է այս ջահէլ, տխուր տրոյացին։

ULYSSES.
Նա պրիամոսի կրտսեր որդին է, ստոյգ մի ասպետ, դեռ այր չէ հասուն, բայց արդէն չունի ոչ մի մրցակից, իր խօսքի տէրն է եւ նա խօսում է միայն գործերով։ շուտ չի բռնկւում, բայց բռնկողին նա սանձել գիտէ, նրա ե՛ւ Ձեռքն է, ե՛ւ սիրտն է բարի։ Ինչ ունի, կը տայ եւ կ՝ասի, ինչ որ լեզուի ծայրին կայ, բայց նա տալիս է, երբ դատավճիռն առաջնորդում է շռայլութեանը, երբ պիղծ մտքերը չեն ազնուանում կեանքի գոյութեամբ։ Նա հեկտորի պէս քաջ է, առնացի, բայց վտանգաւոր, քանզի հեկտորը՝ ցասման բոցերում դարձեալ քնքուշ է, բայց նա սիրոյ մէջ վրիժառու է, քան խանդոտ սէրը։ Նրան կոչում են խիզախ տրուլոս, նա նրանց յոյսն է եւ գեղեցիկ է, ինչպէս հեկտորը։ Այսպէս ինձ ասաց մեր էնէասը, որ ճանաչում է այդ քաջ պատանուն մինչեւ եղունգը. այսպէս թարգմանեց նրա հոգին ինձ մեծ իլիոնի մէջ։

[Hector and Ajax begin fighting.]

AGAMEMNON.
Մենամարտում են։

NESTOR.
Դիմացիր, այաքս։

TROILUS.
Քնա՞ծ ես, հեկտոր, դեհ, շուտ արթնացիր։

AGAMEMNON.
Նրա հարուածներն ասես բարի են, այս կողմ եկ, այաքս։

DIOMEDES.
Լաւ, բաւական է։

AENEAS.
Օ՜, բաւ է, ասպետ։

AJAX.
Դեռ չեմ տաքացել, թող կռուենք նորից։

DIOMEDES.
Եթէ հաճոյ է այսպէս հեկտորին։

HECTOR.
Ոչ, հաճելի չէ։ Դու իմ հօր քրոջ որդին ես, իշխան, դու՝ մեծ պրիամոսի քրոջ զաւակը։ Մեր արեան պարտքը արգելք է դնում երկուսիս դաժան մրցութեան վրայ։ Եթէ քո արեան խառնուրդն այնպէս է, որ դու կարող ես մեր մարմնի մասերն իրարուց ջոկել՝ ասելով, որ սա Ձեռքն է յունացու, սա՝ տրոյացու, կամ թէ այս ոտքի ջիղն է յունական, սա՝ տրոյական, վերջապէս ասել՝ մօրդ արիւնն է աջ այտդ

ներկում, իսկ Ձախը՝ հօրդ, ապա երդւում եմ մեծ արամազդով, որ քո յունական եւ ոչ մի անդամ չի կարող կրել իմ սրի հետքը։ Բայց արդարադատ մեր աստուածները չեն ուզում՝ թափուի արեան մի կաթիլ քո սուրբ մայրիկից։ Թոյլ տուր քեզ գրկել, սիրելի այաքս, Օ՜, զեւսը վկայ, դու ունես առողջ եւ առոյգ Ձեռքեր, եւ ես կ՝ուզէի նրանց պինդ սեղմել, քեզ փառք ու պատիւ, հարազատ եղբայր։

AJAX.
Շնորհակալութիւն, փառապանծ հեկտոր։ Դու անչափ ազնիւ եւ նոյնքան բարի այր ես, սիրելիս, ես եկայ այստեղ, որ քեզ սպանեմ, որ քո մահուան մէջ փառքս զօրանայ։

HECTOR.
Օ՜, սքանչելի նէոփթոլեմոսը, ում պայծառափայլ սաղաւարտի վրայ փառքն է շողշողում՝ ազդարարելով։ *«Յարգէք, սա նա է»* հազիւ թէ խորհէր, որ ինքն հեկտորից կարող է խլել նրա հռչակը։

AENEAS.
Արդ, երկու կողմը Ձեզ է սպասում, ի՞նչ էք որոշում։

HECTOR.
Մեր պատասխանն է՝ գրկախառնուել։ Մնաս բարով, այաքս։

AJAX.
Եթէ խնդրանքս ազնուաբար յարգեն, որ հազուադէպ է պատահում ինձ հետ, ես կ՝ուզենայի, որ իմ փառապանծ եղբայրն այցելէր մեր վրանները։

DIOMEDES.
Ագամեմնոնը եւ աքիլլեսը վաղուց են ուզում հեկտորին տեսնել առանց զէնքերի։

HECTOR.
Էնէաս, կանչիր տրուլոսին ինձ մօտ եւ մեզ ուղեկցող տրոյացոց յայտնիր այս

խիստ սիրալիր հանդիպման մասին, ասա, որ նրանք տուն վերադառնան։ Ձեռքդ տուր, եղբայր։ Գնանք խնջույքի, ուզում եմ տեսնել յոյն ասպետներին։

AJAX.
Ահաւասիկ եւ մեծ ագամեմնոնը մօտենում է մեզ։

HECTOR.
Նրանց անուններն ասա մէկ առ մէկ. հետախոյզ աչքս կարող է գտնել քաջ աքիլլեսին, քանզի նա ունի փառահեղ հասակ։

AGAMEMNON.
Ողջոյն քեզ, ողջոյն, այր երեւելի, ողջոյն այն մարդուց, որ կ՝ուզէր խոյս տալ նման թշնամուց։ Սա բարեհամբոյր ողջոյն չէ բնաւ. միտքս պարզ ասեմ. ինչ որ եղել է, թող մոռացումի խայտառակ ու պիղծ աղբով ծածկուի, իսկ գալիք օրը թաքնուի մթնում։ Սակայն այս պահին է անկեղծ ու մաքուր. ես աստուածային անարատութեամբ իմ ամբողջ հոգով ողջունում եմ քեզ, մեծանուն հեկտոր։

HECTOR.
Շնորհակալութիւն, մեծ ագամեմնոն։

AGAMEMNON.
[To Troilus.] Այսպիսի ողջոյն քեզ, քաջ տրոյացի։

MENELAUS.
Թողէք՝ հաստատեմ իմ իշխանական եղբօր ողջոյնը, ռազմասէր եղբայրք, Ձեզ ողջոյն այստեղ։

HECTOR.
Այժմ մենք ո՞ւմ ենք պատասխան տալու։

AENEAS.
Մենելաոսին։

HECTOR.
Այդ դո՞ւ ես, տէր իմ։ Երդւում եմ ահա մարսի ձեռնոցով, շնորհակալութիւն։ Մի՛ հեգնիր, իշխան, երդումն անսովոր, քո երբեմնի կինը երդւում է վեներայի ձեռնոցով, եւ նա առողջ է, բայց խնդրել է ինձ քեզ չողջունել։

MENELAUS.
Անունը մի տուր, հաճելի չէ ինձ։

HECTOR.
Ներիր, վշտացրի։

NESTOR.
Յաճախ եմ տեսել, ով քաջ տրոյացի, թէ ինչպէս խոնարհի ճակատագրին՝ դու բացում էիր քո արնոտ ճամփան՝ ճեղքելով յունաց շարքերն ամրակուռ, ես տեսել եմ քեզ, երբ դու, կրակոտ պերսէի նման քո փռիւգիական ձին խթանելով, անգոսնում էիր ե՛ւ փառք, ե՛ւ վրէժ, եւ քո մերկացած սուրը չէր իջնում քո ոտքերի տակ ծնրադիր կանգնած զինուորի գլխին։ Եւ ես յաճախ եմ իմ շուրջ հաւաքուած այրերին ասել. նայեցէք, սա է մեծ արամազդը՝ մարդու կեանք բաշխիչ։ Իրաւ, տեսել եմ քեզ ոլիմպիական ըմբիշի նման՝ հոգիդ անխռով, հանգիստ շնչելիս, երբ օղակել են յոյները քաջիդ։ Այո՛, տեսել եմ, սակայն քո դէմքը միշտ ծածկուած էր երեսկալով, ես ճանաչում եմ քո ազնիւ պապին։ Նա զինուոր էր քաջ, բայց մարսը վկայ, մեր զօրավարի թոռը ուրիշ է, թոյլ տուր ծերունուս՝ քեզ գրկել այստեղ եւ քեզ ողջունել մեր վրանների տակ։

AENEAS.
Սա ծեր Նեստորն է։

HECTOR.

Թոյլ տուր քեզ գրկել, ով հին տարեգիր, որ այսպէս վաղուց քայլում ես մէկտեղ ժամանակի հետ։ Գերագոյն նեստոր, թոյլ տուր ջերմօրէն քեզ սեղմել կրծքիս։

NESTOR.

Ա՛խ, ես կ՝ուզէի, որ բազուկներս եւ մարտում այնպէս քեզ հետ կռուէին, ինչպէս յարգանօք ողջունում են արդ։

HECTOR.

Այդ էլ կ՝ուզէի։

NESTOR.

Հա՛, հա՛, երդւում եմ ճերմակ մօրուքովս, որ կը կռուէի հէնց վաղը քեզ հետ։ Լաւ, լաւ, քեզ ողջոյն։ Մի ժամանակ էր։

ULYSSES.

Ես զարմանում եմ, թէ այս քաղաքը ինչպէ՞ս է կանգուն, երբ նրա հիմքը մեզ մօտ է՝ այստեղ։

HECTOR.

Ճանաչում եմ քեզ, սիրելի ուլիս, ա՛խ, ինչքա՜ն յոյներ ու տրոյացիք արիւն են թափել այն օրից ի վեր, ինչ ես տեսայ քեզ առաջին անգամ դիոմեդեսի հետ՝ որպէս դեսպաններ մեծն իլիոնում։

ULYSSES.

Դեռ այն օրերին գուշակում էի այս կռուի ելքը. մարգարէական խօսքս զուր չանցաւ, բայց նրա կէսը դեռ ճամփորդում է։ Այս պարիսպները, որ Ձեր քաղաքն են գրկում տիրաբար, եւ այս բերդերը, որ զուարճօրէն ամպ են համբուրում, պէտք է կործանուեն։

HECTOR.
Ա՛խ, չեմ հաւատում, Օ՛, դեռ տրոյան կանգնած է ամուր, եւ իւրաքանչիւր փռիւգիական քարը պոկուելիս կը ներկուի, աւա՛ղ, յունացու արեամբ։ Վերջն է գովելի։ Հին հաշտարարը՝ ծեր ժամանակը, ամէն ինչ կ՝ուղղի։

ULYSSES.
Թող նա որոշի։ Մինչ այդ խիստ ազնիւ եւ նոյնքան խիզախ հեկտորին՝ ողջո՜յն։ Մեր զօրավարին տեսնելուց յետոյ, խնդրում եմ, ինձ հետ խնջոյքի նստէք իմ վրանի տակ։

ACHILLES.
Այդ մէկը չեղաւ, սիրելի ուլիս, հեկտոր, քեզնով են աչքերս հիանում, ես ագահաբար քեզ եմ ընթեռնում, որ միշտ քեզ յիշեմ։

HECTOR.
Աքիլլե՞սն ես դու։

ACHILLES.
Ճիշտ այսպէս, հեկտոր։

HECTOR.
Խնդրում եմ, թոյլ տուր քեզ մի լաւ նայել։

ACHILLES.
Կարող ես նայել յագենալու չափ։

HECTOR.
Ոչ, արդէն լաւ է։

ACHILLES.
Կարճ չեղա՞ւ արդեօք։ Մինչդեռ վերստին ես քեզ եմ նայում, նայում եմ, որ քեզ մի

լաւ ճանաչեմ։

HECTOR.
Քեզ համար գիրք եմ ես զուարճալի, որքան էլ կարդաս, դարձեալ չես կարող բոլորն հասկանալ։ Ինչո՞ւ ես աչքերդ յառնում ինձ վրայ։

ACHILLES.
Ասէք, աստուածներ, մարմնի ո՞ր մասին իմ հայեացքն ուղղեմ, որ նա սպանուի։ Որտե՞ղ է այն վէրքն, ուրկից կը թռչի հեկտորի ոգին։ Օ՜, պատասխանէք ինձ, սուրբ աստուածներ։

HECTOR.
Ով ամբարիշտ մարդ, թէ աստուածները քեզ պատասխանեն, կ՝անպատուեն իրենց։ Դարձեալ սպասիր, իզուր ես կարծում, թէ այսքան հեշտ է նախապէս խորհել ու մի յուսալի եղանակ գտնել ինձ սպանելու։

ACHILLES.
Ես չեմ վարանում։

HECTOR.
Եթէ դու նոյնիսկ լինէիր աստուած, դարձեալ խօսքերիդ չէի հաւատայ։ Ուստի զգուշացիր, քանզի նախապէս ես չեմ փնտրելու հարուածի տեղը։ Բայց ես երդւում եմ մարսի դարբնոցով, ուր սաղաւարտն են կռել այդ աստծու, որ քեզ կը սպանեմ միայն ռազմի դաշտում։ Ներիր, ով մեծ յոյն, քանզի սա եղաւ սնապարծութիւն, նրա ժպրհութիւնն ստիպեց դուրս տալ յիմարութիւններ, բայց ես կը ջանամ խօսքս հաստատել միայն գործերով։

AJAX.
Ա՜խ, մի բարկանար, սիրելի եղբայր։ Իսկ դու, աքիլլես, թող սպառնալիքդ, մինչեւ որ դիպուածն ու ճակատագիրն հնարաւորութիւն տան այն իրագործել։ Եւ դու ամէն օր, եթէ կամենաս, կարող ես նրանով լրիւ յագենալ։ Բայց վախենում եմ, որ մեր

խորհուրդը թոյլ չտայ՝ կռուես քաջ հեկտորի հետ։

HECTOR.
Խնդրում եմ, թոյլ տուր քեզ տեսնել դաշտում, այն օրից ի վեր, ինչ դու թողել ես դաշտը յոյների, մենք պատերազմ ենք միմիայն խաղում։

ACHILLES.
Խնդրո՞ւմ ես, հեկտոր։ Վաղն ինձ կը տեսնես մահից էլ ահեղ, իսկ այսօր լինենք որպէս բարեկամ։

HECTOR.
Ձեռքդ տուր՝ ի նշան համաձայնութեան։

AGAMEMNON.
Յունաց սեպուհներ, ամէնից առաջ գնանք վրանս եւ այնտեղ նստենք ուրախ խնջոյքի։ Եթէ հեկտորը եւ դուք կամենաք, ապա առանձին նա բոլորիդ հետ կը զուարճանայ։ Փողեր հարկանէք, թմբուկներ զարկէք, թող երեւելի զինուորն իմանայ, թէ մենք ինչպէս ենք ողջունում նրան։

[All exit save Troilus and Ulysses.]

TROILUS.
Սիրելի ուլիս, խնդրում եմ, ասա, դաշտի ո՞ր մասում կալքասն է ապրում։

ULYSSES.
Մենելաոսի վրանի կողքին, մեծագոյն իշխան, այսօր նա այստեղ խնջոյք է սարքել դիոմեդեսի հետ, ում կոյր աչքերին երկինքն ու երկիրն էլ չեն երեւում. սիրատենչ աչքերն ու ամբողջ միտքը բեւեռուել է նա այն գեղեցկատես կրեսիդային։

TROILUS.
Օ՛, բարի եղէք, սիրելի ուլիս, ինձ տանել այնտեղ, երբ մենք կը թողնենք

ագամեմնոնին։

ULYSSES.
Մեծ սիրով, իշխան։ Բայց դու ինձ ասա, այդ կրեսիդան ինչպէ՞ս է պահել իրեն տրոյայում։ Նա չի՞ ունեցել արդեօք սիրեկան, որ ողբացել է նրանից հեռու։

TROILUS.
Օ՛, քամահրանքի արժանի է նա, ով պարծենում է վիրաւոր սրտով։ Դեհ, գնանք, ուլիս, սիրելի էր նա, եւ ինքն էր սիրում։ Բայց դիւթիչ սէրը բախտի ոտքի տակ սաստիկ երեր է։ [Exits.]

][][

ACT V. SCENE I.
The Grecian Camp. Before the tent of Achilles. Achilles and Patroclus enter.

ACHILLES.
Գիշերն յունական գինով կը վառեմ ես այն արիւնը, որն առաւօտեան կը հովացնի սուրս։ նրա մեծ պատուին խնջոյք պատրաստիր։

PATROCLUS.
Ահա գալիս է եւ թերսիդեսը։

[Thersites enters.]

ACHILLES.
Հէ՛յ, նախանձոտ շուն, վաղուց յանգած փուռ, ի՞նչ լուրեր ունես։

THERSITES.
Ահաւասիկ քեզ մի նամակ, ո՛վ ոչնչութեան պատկեր, ո՛վ անմիտ երկրպագուների կուռք։

ACHILLES.
Որտեղի՞ց է նամակը, ո՛վ մարդկային տականք։

THERSITES.
Տրոյայից, յիմարութեամբ լեցուն պնակ։

PATROCLUS.
Այժմ ո՞վ է պալատը հսկում։

THERSITES.
Վիրաբոյժի արկղը կամ հիւանդի վէրքը։

PATROCLUS.
Հրաշալի է ասուած, թշուառական։ Բայց ինչո՞ւ են այս խաղերը։

THERSITES.
Լռիր, մանչուկս, քո խօսքերից ինձ օգուտ չկայ, չէ՞ որ դու աքիլլեսի սպասաւորուհին ես։

PATROCLUS.
Ի՞նչ, սպասաւորուհի՞։ Ի՞նչ ես ուզում ասել, սրիկայ։

THERSITES.
Դու նրա բոզն ես։ Թող քո վրայ թափուեն հարաւի նեխող ախտերը, աղեթափութիւնները, սաստիկ հարբուխները, երիկամներդ քարերով ծանրանան, անզգայանաս, անդամալոյծ դառնաս, աչքերդ վէրքով ծածկուեն, լեարդդ թարախակալուի, թոքերդ չորանան, սերմնարանդ լցուի պալարներով, յօդերդ ցաւեն, Ձեռքիդ ափերը կրափուռ դառնան, անբուժելի ոսկրացաւ ու համատարած բորոտութիւնը քեզ պատեն, եւ դարձեալ այսպիսի այլանդակ ախտերով վարակուես։

PATROCLUS.
Ինչո՞ւ ես այսպէս անիծում, չարութեան զզուելի անօթ։

THERSITES.
Ես քեզ անիծո՞ւմ եմ։

PATROCLUS.
Այո՛, ծակ տակառ, այո՛, քոսոտ շուն։

THERSITES.
Սա անէծք չէ, այլ ճշմարտութիւն։ Դրա համար էլ բարկանում ես, կանաչ սնդուսի լաթ՝ հիւանդի աչքի վրայ, մսխող մարդու քսակի ծոպ։ Ա՜խ, ինչո՞ւ է այս խեղճ աշխարհը լեցուն նման մժղուկներով, որ խայտառակում են բնութիւնը։

PATROCLUS.
Չքուիր այստեղից, մաղձ։

THERSITES.
Լռիր, հոտած Ձու։

ACHILLES.
Ազնիւ պատրոկլէս, իմ մեծ յոյսերը ի դերեւ ելան. ես չեմ կամենում Էգուցուայ կռուին մասնակից դառնալ, ահա ինձ մօտ է մայր հեկուբէի ու նրա դուստր՝ իմ անգին սիրոյ ուղերձ-նամակը։ Նրանք երկուսով ինձ աղերսում են, որ ամուր կանգնեմ իմ խօսքի վրայ, եւ ես չեմ կարող իմ ուխտը դրժել։ Կ՝ընկնեն յոյները, կ՝ընկնի իմ փառքը, իմ մեծ անունը, բայց չեմ պղծի իմ սուրբ արիւնը, գնանք, թերսիդես, որ մէկտեղ հոգանք գործը վրանի. այս գիշեր պէտք է մեծ խնջոյք լինի։ Գնանք, պատրոկլէս։

[Achilles and Patroclus exit.]

THERSITES.
Երանի թէ հորդ արիւնը եւ փոքրիկ ուղեղը յիմարացնեն այս երկուսին։ Եւ եթէ նրանք հորդ արիւնից եւ նուազ ուղեղից արդէն յիմարացել են, ապա ես կը դառնամ յիմարների բժիշկը։ Ահա ագամեմնոնը. բաւական պարկեշտ մարդ է, բայց լորամարգի է սիրում։ Սրա ուղեղն էլ է աւելի նուազ, քան ականջների կեղտը։ Ահա եւ նրա եղբայրը՝ մենելաոսը՝ իւպիտերի հրաշալի կերպարանափոխութիւնը, ցուլի նախապատկերը, կնախաբի թիւր յուշարարը, ոտնամանի խղճուկ կոտոշ՝ յաւէտ կապուած եղբօր ոտքին։ Էլ ինչո՞վ կարող է Ձեւափոխուել նրա ուղեղը, որ քաջալերուած է չարութեամբ, կամ չարութիւնը՝ քաջալերուած սրամտութեամբ։ Գուցէ էշով։ Առանց այն էլ էշ է։ Գուցէ ցուլով։ Առանց այն էլ ե՛ւ էշ է, ե՛ւ ցուլ։ Արեւս վկայ, ես կը դառնամ շուն, ջորի, կատու, ժանտակուզ, դօդօշ, մողէս, ցին, բուէճ, բայց ոչ մենելաոս։ Ես կ՝ըմբոստանամ ճակատագրիս դէմ։ Ինձ մի հարցնէք, թէ ինչ եմ ուզում դառնալ, եթէ չլինէի թերսիդեսը։ Աւելի լաւ է բորոտի ոջիլ լինել, քան մենելաոս։ Այս ի՞նչ է, ոգիներ ու կրակներ են երեւում։

[Hector, Troilus, Ajax, Agamemnon, Ulysses, Nestor, Menelaus and Diomedes enter with torches lit.]

AGAMEMNON.
Ճամփից շեղուել ենք, սխալ ենք գնում։

AJAX.
Ոչ, ոչ, լոյսերը պարզ երեւում են։

HECTOR.
Չարչարում եմ քեզ։

AJAX.
Ոչ, ամենեւին։

ULYSSES.
Ահա, քեզ ինքն է ճամփայ ցոյց տալիս։

ACHILLES.
[Entering.] Ողջոյն, քաջ հեկտոր, ողջոյն, իշխաններ։

AGAMEMNON.
Քեզ բարի գիշեր, տրոյայի հպարտութիւն։ Պահակախումբը, որ պիտ քեզ հսկէ, մենք վստահում ենք ազնիւ այաքսին։

HECTOR.
Շնորհակալութիւն եւ բարի գիշեր յոյն զօրավարին։

MENELAUS.
Բարի գիշեր, հեկտոր։

HECTOR.
Օ՛, բարի գիշեր, անուշ մենելաոս։

THERSITES.
Ասաց՝ անուշիկ։ Լաւ չէ՞ր լինի ասէր՝ անուշ ոտաց ճանապարհ, անուշ կոյուղի։

ACHILLES.
Բարի ճանապարհ գնացողներին, եւ նրանց ողջոյն, ովքեր կը մնան։

AGAMEMNON.
Բարի գիշեր։

[Agamemnon and Menelaus exit.]

ACHILLES.

Ծերուկ նեստորը մնում է այստեղ, մնում ես եւ դու, ջահէլ դիոմեդես։ քէֆ անենք մի քիչ քաջ հեկտորի հետ։

DIOMEDES.
Օ՛, ես չեմ կարող, պէտք է շտապել. կարեւոր գործ կայ, մնաս բարով, հեկտոր։

HECTOR.
Ձեռքդ ինձ մեկնիր։

ULYSSES.
[Aside to Troilus.] Հետեւիր նրա կանթեղի լոյսին, դէպի կալքասի վրանն է գնում։ Գնա, գալիս եմ։

TROILUS.
[Aside to ulysses.] Շնորհակալութիւն այս պատուի համար, սիրելի իշխան։

HECTOR.
Եթէ այսպէս է, քեզ բարի գիշեր։

[Diomedes exits. Ulysses and Troilus follow him.]

ACHILLES.
Գնանք վրանս։

[Achilles, Hector, Ajax and Nestor exit.]

THERSITES.
Այս դիոմեդեսը խարդախ սրիկայ է, մեծագոյն խաբեբայ։ Ես աւելի շատ հաւատում եմ օձի ֆշշոցին, քան նրա լեզուին։ Նրա խօսքը ու շան հաչոցը նոյնն են։ Եթէ նա մի անգամ իր խօսքի տէրը լինի, ինչպէս վկայում են աստղագէտները, աշխարհում հրաշք տեղի կ՝ունենայ, եւ արեւը իր լոյսը փոխ կ՝առնի լուսնից։ Աւելի

լաւ է՝ շան պէս հետեւեմ նրան, քան հրաժարուեմ հեկտորին նայելուց։ Ասում են՝ նա կապուած է տրոյացի բոզի հետ, եւ դաւաճան կալքասի վրանը քօղարկում է նրանց կեղտոտ գործարքը։ Լաւ է՝ գնամ նրա ետեւից։ Ամէնուրեք՝ անառակութիւն, ամէնուրեք՝ զզուելի սրիկաներ։ [Exits.]

][][

## ACT V. SCENE II.
The Grecian Camp. Before Calchas' tent. Diomedes enters.

### DIOMEDES.
Ի՞նչ։ Դու այստե՞ղ ես։ խօսիր։

### CALCHAS.
[From inside the tent.] Ո՞վ է։

### DIOMEDES.
Դիոմեդեսն է։ Իսկ դու, կարծեմ, կալքասը։ Որտեղ է աղջիկդ։

### CALCHAS.
[From inside the tent.] Նա հիմա քեզ մօտ կը գայ։

[Troilus and Ulysses enter and stand alone, soon Thersites joins them.]

### ULYSSES.
Դու այնպէս կանգնիր, որ լոյսը չընկնի երկուսիս դէմքին։

[Cressida enters.]

### TROILUS.
Կրեսիդան ելաւ նրա վրանից։

DIOMEDES.
Ի՞նչ կ՝ասես, հոգեակս։

CRESSIDA.
Սիրելիս, թոյլ տուր երկու բառ ասել։ Շշնջում է։

TROILUS.
Աստուած իմ, ինչպէ՛ս շուտ ընտելացան։

ULYSSES.
Տղամարդ տեսնելիս այս աղջկայ աչքերն են խաղում։

THERSITES.
Եւ տղամարդիկ կարող են աչքերը խաղացնել, եթէ նրա սրտով լինի։

DIOMEDES.
Ուրեմն, յիշիր։

CRESSIDA.
Այո՛, կը յիշեմ։

DIOMEDES.
Ցոյց կը տաս գործով։ Եւ թող քո կամքը զուգակցուի խօսքիդ։

TROILUS.
Ի՞նչ պէտք է նա յիշի։

ULYSSES.
Լռիր։

CRESSIDA.
Ա՛խ, անուշիկ յոյն, ինձ մի հրապուրիր։

THERSITES.
Ի՛նչ անզգամն է։

DIOMEDES.
Ուրեմն այսպե՞ս։

CRESSIDA.
Ուզում եմ ասել։

DIOMEDES.
Ինչ էլ որ ասես, սուտ երդում է լոկ։

CRESSIDA.
Ա՛խ, ես չեմ կարող։ Ի՞նչ ես կամենում։

THERSITES.
Օ՛, ճարտար խաղ է. առանձնանում է։

DIOMEDES.
Դու ի՞նչ խոստացար՝ ինձ երդում տալով։

CRESSIDA.
Աղերսում եմ քեզ, Օ՛, սիրելի յոյն, ինչ որ կամենաս, ինձնից պահանջիր, բացի այդ մէկից։

DIOMEDES.
Լաւ, բարի գիշեր։

TROILUS.
Օ՛, համբերութիւն։

ULYSSES.
Տեսա՞ր, տրոյացի։

CRESSIDA.
Լսիր, դիոմեդես։

DIOMEDES.
Ոչ, բարի գիշեր, այլեւս յիմար չեմ։

TROILUS.
Բայց քեզնից լաւին յիմարացնում է։

CRESSIDA.
Սպասիր, մի բառ ականջիդ ասեմ։

TROILUS.
Օ՛, ի՜նչ տառապանք, ի՜նչ անմտութիւն։

ULYSSES.
Դու շատ ես յուզուել, աղերսում եմ քեզ, գնանք այստեղից։ Թէ ոչ՝ քո սաստիկ դժկամութիւնը կաճի բարկացայտ արտայայտութեամբ։ Այստեղ ահարկու վտանգաւոր է, եւ ժամն է անհաշտ։ Գնանք այստեղից։

TROILUS.
Սպասիր մի քիչ։

ULYSSES.
Ոչ, գնանք, գնանք։ Դու կորցրել ես քեզ։

TROILUS.
Աղերսում եմ, կաց։

ULYSSES.
Դու կորցրել ես համբերութիւնդ։

TROILUS.
Աղերսում եմ՝ կաց։ Երդւում եմ դժոխքի բիւր տանջանքներով. մի բառ չեմ ասի։

DIOMEDES.
Լաւ, բարի գիշեր։

CRESSIDA.
Բայց դու գնում ես ինձնից խռոված։

TROILUS.
Վշտացնո՞ւմ է քեզ։ Օ՜, խիստ թորշոմած հաւատարմութիւն։

ULYSSES.
Չսպիր քեզ, իշխան։

TROILUS.
Երդւում եմ զեւսով, ես ձայն չեմ հանի։

CRESSIDA.
Ա՛խ, իմ պահապան։

DIOMEDES.
Դեհ, մնաս բարով, դու խոյս ես տալիս։

CRESSIDA.
Հաւատա, ա՜խ, ոչ։ Եկ նորից այստեղ։

ULYSSES.
Դողում ես, տէր իմ։ Գնանք, շտապիր։ Դու վատ ես զգում։

TROILUS.
Նա նրա ձեռքով իր այտն է շոյում։

ULYSSES.
Դեհ, գնանք, գնանք։

TROILUS.
Ոչ, ոչ, սպասիր։ Երդւում եմ զեւսով, որ ձայն չեմ հանի, վիրաւորանքիս ու կամքիս միջեւ համբերութիւնն է ելնում որպէս պատ։ քիչ էլ սպասիր։

THERSITES.
Ինչպէ՜ս է անառակութեան սատանան իր իւղոտ ու կարտոֆիլ-մատներով խուտուտ տալիս նրանց։ Տապակուիր, անառակի մէկ, տապակուիր։

DIOMEDES.
Դու խօսքի տէ՞րն ես։

CRESSIDA.
Ես քեզ չեմ խաբում։ Թէ ոչ՝ այլապէս ինձ մի հաւատա։

DIOMEDES.
Տուր ինձ երաշխիք հաւատարմութեան։

CRESSIDA.
Հիմա կը բերեմ։ [Exits.]

ULYSSES.
Տես, հա,երդուել ես, որ կը համբերես։

TROILUS.
Օ՛, մի վախենար, սիրելի ուլիս, խեղդում եմ իմ մէջ ամէն զգացում։ Ես ամբողջովին համբերութիւն եմ։

[Cressida re-enters.]

THERSITES.
Դեհ, ցոյց տուր, ցոյց տուր գրաւականդ։

CRESSIDA.
Ահա, դիոմեդես, իմ թեզանիքը։

TROILUS.
Օ՛, գեղեցկութիւն, որտե՞ղ է, ասա ճշմարտութիւնը։

ULYSSES.
Տրուլոս, յիշիր։

TROILUS.
Ես համբերում եմ, թէկուզ առերես։

CRESSIDA.
Նայիր, դիոմեդես, այս թեզանիքին։ Նա սիրում էր ինձ, Օ՛, նենգ դրուժան, ոչ, վերադարձրու։

DIOMEDES.
Ո՞ւմն է, կրեսիդա։

CRESSIDA.
Ումն էլ որ լինի, ինձ մօտ է հիմա։ Ես վաղը գիշեր քեզ չեմ այցելի։ Աղերսում եմ քեզ. էլ ինձ մօտ չգաս։

THERSITES.
Հրաշալի է, ինչպէ՛ս է սրում, ասես հեսանաքար լինի։

DIOMEDES.
Թեզանիքն ինձ տուր։

CRESSIDA.
Ի՞նչ, թեզանիքը՞։

DIOMEDES.
Այո՛, ի հարկէ։

CRESSIDA.
Օ՛, դուք աստուածներ։ Օ՛, իմ գեղեցիկ, գեղեցիկ շնորհ, քո ազնիւ տէրը, անկողնում պառկած, յիշում է հիմա իր սէրը եւ քեզ, եւ հառաչելով իր շուրթերին է հպում Ձեռնոցս, այսպէս, դիոմեդես, քեզ եմ համբուրում։ Բայց ոչ, մի խլիր, զի այն խլելով՝ իմ սիրտն ես խլում։

DIOMEDES.
Կրեսիդա, քո սիրտը վաղուց եմ խլել, հերթը հասել է քո թեզանիքին։

TROILUS.
Ես խօսք եմ տուել, աւա՛ղ, համբերել։

CRESSIDA.

Չեմ տայ, դիոմեդես, երդւում եմ՝ չեմ տայ, ուրիշ բան ուզիր։

DIOMEDES.
Ոչ, թեզանիքը։ Ո՞վ է քեզ տուել։

CRESSIDA.
Ա՜խ, կարեւոր չէ։

DIOMEDES.
Չե՞ս ասում ումն է։

CRESSIDA.
Նրանը, ով ինձ շատ խորն էր սիրում, քան դու, դիոմեդես։ Եթէ խլում ես, ուրեմն վերցրու։

DIOMEDES.
Ո՞վ է քեզ տուել։

CRESSIDA.
Սուրբ դիանայի կոյսերը վկայ, վկայ ինքն անձամբ՝ երբեք չեմ ասի։

DIOMEDES.
Ես կ՝ամրացնեմ վաղը թեզանիքն իմ սաղաւարտին, եւ թող վշտանայ նրա քաջ ոգին, ով չի յանդգնի այն ետ պահանջել։

TROILUS.
Թէկուզ դեւ լինես, քո եղջիւրներից ես այն կը պոկեմ։

CRESSIDA.
Ինչ որ եղել է, անցել է արդէն։ Ոչ, ոչ, չի անցել։ Իմ տուած խօսքից հրաժարւում եմ։

DIOMEDES.
Դեհ, մնաս բարով, երբեք չփորձես ինձ կրկին ծաղրել։

CRESSIDA.
Ոչ, ոչ, մի գնա, դեռ մի բառ չասած՝ նեղանում ես դու։

DIOMEDES.
Գիտցիր, չեմ սիրում յիմարութիւններ։

THERSITES.
Ես էլ երդւում եմ պլուտոնի անունով։ Այն, ինչ դու չես սիրում, ինձ անչափ դուր է գալիս։

DIOMEDES.
Ուրեմն գնամ։ Արդեօք ո՞ր ժամին։

CRESSIDA.
Ա՛խ, գնա, գնա։ Օ՛, զեւս, թէեւ ինձ տանջում է խիղճս։

DIOMEDES.
Դեհ, մնաս բարով, մինչ նոր հանդիպում։

CRESSIDA.
Ա՛խ, բարի գիշեր, նորից ինձ մօտ եկ։

[Diomedes exits.]

CRESSIDA [cont.]
Մնաս բարով, տրուլոս։ Մի աչքս քեզ է դեռեւս նայում, իսկ միւս աչքիս կիրքն է հմայում։ խեղճ կանացի սեռ. աչքի խաղը նենգ ծնում է, աւա՛ղ, ե՛ւ յանցանք, ե՛ւ

մեղք։ Կինը ամէն ինչ աչքով է դատում, ուստի եւ նրան մարդ չի հաւատում։ [Exits.]

THERSITES.
Աւելի զօրեղ ապացոյց չունէր, թէ ոչ՝ նա իրեն բոզ կը հռչակէր։

ULYSSES.
Կորաւ ամէն ինչ, սիրելի տրուլոս։

TROILUS.
Այո՛, տեսնում եմ։

ULYSSES.
Ո՞ւմ ես սպասում։

TROILUS.
Ուզում եմ գրել իմ սրտի վրայ իւրաքանչիւր վանկ, որ այստեղ ասուեց։ Բայց միթէ՞, իրաւ, ես տեսայ նրանց, արդեօք չե՞մ կեղծում, ճշմարտութի՞ւն է։ Օ՛, ոչ։ Իմ հոգում դեռ կայ մի հաւատ, անկոտրում մի յոյս, որ ետ է դարձնում վկայութիւնը իմ տեսողութեան ու լսելիքի։ Չէ՞ որ յաճախ են այս օրգանները հմտօրէն խաբում։ Միթէ՞ այստեղ չէր իմ կրեսիդան։

ULYSSES.
Կախարդ չեմ, տրուլոս։

TROILUS.
Նա չէր։

ULYSSES.
Ոչ, նա էր։

TROILUS.
Ես չեմ զառանցում։

ULYSSES.
Ես նոյնպէս, իշխան։ Բայց նա այստեղ էր։

TROILUS.
Ա՛խ, ի սէր կանանց՝ ես չեմ հաւատում։ Յիշիր, որ մենք էլ մայր ենք ունեցել։ Մի՛ թող՝ կամակոր չարախօսները, որ պատրաստ են միշտ ցեխոտել մարդկանց, կանանց շուրջ դատեն լոկ կրեսիդայով։ Դու համոզիր քեզ, որ կրեսիդան այստեղ չի եղել։

ULYSSES.
Ի՞նչ է նա արել, իմ ազնիւ իշխան, որ կարողանայ մեր մօրն աղտոտել։

TROILUS.
Ի հարկէ, ոչինչ։ Եթէ նա, իրաւ, այստեղ չի եղել։

THERSITES.
Հրաժարւում է սեփական աչքից։

TROILUS.
Օ՛, միթէ՞ նա է, ոչ, դիոմեդեսի կրեսիդան է։ Եթէ սիրտ ունի գեղեցկութիւնը, ուրեմն նա չէ, եթէ հոգիներն առաջնորդւում են սուրբ երդումներով, եթէ երդումներն ուրախութիւն են պատճառում աստծուն, եթէ օրէնք կայ ամէն ինչի մէջ, ուրեմն նա չէ։ Օ՛, բանդագուշանք, որ դու խօսում ես ե՛ւ կողմ, ե՛ւ ընդդէմ, կրկնակի կշիռ ես, նժարից վրայ ապստամբւում է բանականութիւնն առանց կորստի, եւ կորսուելով դու յանձնում ես քեզ բանականութեանն՝ առանց ընդվզման. ուրեմն այստեղ չէր իմ կրեսիդան։ Մի օտարոտի պայքար է կիսել իմ այրուող հոգուն, եւ անքակտելի մասերն իրարից այնպէս են զատուած, ինչ երկինքն՝ երկրից։ Ու թէեւ անհուն այս բաժանումին՝ դարձեալ արաքնէն չի կարող բարակ թելն անցկացնել նրա

ճեղքուածքով։ Օրինա՞կ բերեմ։ Ահա պլուտոնի դարպասներն հզօր։ Իմն է կրեսիդան՝ կապուած երկնքի շղթաներով ինձ։ Օրինա՞կ բերեմ։ Ուժեղ է, ինչպէս ինքը՝ երկինքը, բայց շղթաները ջարդուած են, լքուած, եւ մի ուրիշ Ձեռք Ձուլել է նրանց իմ կրեսիդայի հաւատարմութեան եւ ազնիւ սիրոյ փոքրիկ, աննշան, թոյլ բեկորներով, եւ դիոմեդեսն է նրանց շղթայուել նրա իւղալի մնացուկներով։

ULYSSES.
Ազնիւ տրոյլոս, միթէ՞ չես զգում կէսն այն հարուածի, որ մեկնում է, արդ, քո կիրքը այստեղ։

TROILUS.
Այո՛, յոյն։ Եւ դա պիտի քանդակեմ կարմիր տառերով. ինչպիսի՛ մարսի սիրտն է բորբոքել տարփոտ վեներան։ Ոչ մի ջահէլ մարդ այսպէս անվախճան սիրել չգիտի։ Լսիր, բարեկամ, կրեսիդային սիրում եմ անչափ, նոյնպիսի կրքով ատում եմ նրա դիոմեդեսին։ Թեզանիքն իմն է, նա ուզում է այն ամրացնել իր սաղաւարտին։ Թէկուզ վուլկանը ճարտարութեամբ է կոփել-կռանել այդ սաղաւարտը, բայց պիտի ճեղքէ նրան իմ սուրը։ Ահարկու հողմը, որ նաւաստին է կոչում մրրկասիւն՝ պրկուած արեւի հզօր Ձեռքերով, չի խլացնի իր փլուզումով նեպտունի ունկը այնպէս ուժգնօրէն, ինչպէս իմ սրի փութկոտ հարուածը, երբ դիոմեդեսի գլխին շառաչի։

THERSITES.
Նա խուտուտ է տալիս նրան նրա տարփանքի համար։

TROILUS.
Օ՛, իմ կրեսիդան։ Օ՛, նենգ կրեսիդա։ Այո՛, դու նենգ, նենգ, նենգ։ Թող քո ախտաբիծ անուան հետ կապուեն բոլոր դրժումներն՝ ի վերայ երկրի։ Օ՛, նրանք սուրբ են քոնի համեմատ։

ULYSSES.
Սանձիր ինքդ քեզ, զի բարկութիւնդ այստեղ կը բերի բազում ականջներ։

AENEAS.

[Entering.] Տէր իմ, մի ողջ ժամ քեզ էի փնտրում։ Հեկտորը զինուած շտապում է տրոյա, պահնորդ այաքսն է քեզ ուղեկցելու մինչեւ քո տունը։

ULYSSES.

Ես քեզ կ՝ուղեկցեմ մինչեւ դարպասը։

TROILUS.

Շնորհակալութիւն։

[Troilus, Aeneas and Ulysses exit.]

THERSITES.

Ես կ՝ուզէի հանդիպել այդ սրիկայ դիոմեդեսին։ Ես կ՝ուզէի ագռաւի պէս կռաւել, մի չար բան գուշակել։ Ինձ պատրոկլէսը կը տայ մի բան, եթէ ես լուր տամ նրան այս պոռնիկի մասին։ Թութակը նուշի համար այնքան յիմարութիւններ դուրս չի տայ, որքան պատրոկլէսը այս պոռնիկի համար։ Անառակութիւն, անառակութիւն։ Պատերազմն ու անառակութիւնն են միշտ նորաձեւութեան մէջ։ Սատանան տանի նրանց։

[Exits.]

][][

ACT V. SCENE III.

Troy. before Priam's Palace. Hector and Andromache enter.

ANDROMACHE.

Ե՞րբ էր իմ տէրը այսպէս բարկացել, որ ականջներն է ուժգնօրէն փակում

աղերսիս դիմաց։ Հանիր զէնքերդ, մի գնա կռուի։

HECTOR.
Ի՞նչ է, ուզում ես քեզ վիրաւորե՞մ։ Տուն վերադարձիր, երդուել եմ բոլոր սուրբ աստուածներին՝ ես պիտի գնամ։

ANDROMACHE.
Այսօր երազում չար բան եմ տեսել։

HECTOR.
Բաւ է, ասում եմ։

CASSANDRA.
[Entering.] Որտե՞ղ է եղբայրս։

ANDROMACHE.
Այստեղ է, քոյր իմ, հագին՝ ասպազէն, եւ սիրտն՝ արիւնոտ։ Ինձ հետ բարձրաձայն աղերսիր նրան՝ ի ծունր իջած։ Ա՜խ, ամբողջ գիշեր երազներն՝ արնոտ, բազմաձեւ ու չար, հանգիստ չեն տուել խռովայոյզ հոգուս։

CASSANDRA.
Իրաւ է, իրաւ։

HECTOR.
Հէ՜յ, փչիր, փողհար։

CASSANDRA.
Բայց ո՛չ յարձակման, սիրելի եղբայր։

HECTOR.
Գնա, ասացի։ Աստուածներն արդէն երդումս են լսել։

CASSANDRA.
Օ՛, աստուածները խուլ են անխոհեմ երդումի հանդէպ, որն ապականեալ լեարդի նման պղծում է զոհին։

ANDROMACHE.
Համոզուիր, տէր իմ, որ սրբութիւն չէ ի սէր ճշմարտի՝ վնաս պատճառել։ Գողութիւնն երբեք չի արդարացւում՝ յանուն գթութեան։

CASSANDRA.
Երդմանն առիթն է հզօր դարձնում, բայց ամէն երդում պէտք չէ կատարել. հանիր զէնքերդ, սիրելի եղբայր։

HECTOR.
Լռիր, ասում եմ։ Իմ ճակատագրի եղանակն է միշտ պատիւս պահում։ Օ՛, կեանքը թանկ է, բայց ազնիւ մարդու պատիւն աւելի թանկ է մեր կեանքից։

[Troilus enters.]

HECTOR [cont.]
Ի՞նչ կայ, տրուլոս։ Ուզո՞ւմ ես այսօր ռազմի դաշտ մեկնել։

ANDROMACHE.
Կասանդրա, կանչիր, թող իմ հայրը գայ, համոզի նրան։ Կասանդրան գնում է։

HECTOR.
Պէտք չէ, իմ եղբայր, հանիր զրահդ, այսօր ես ինքս եմ հերոս դառնալու, դեռ դու ջահէլ ես, մկաններդ՝ թոյլ, երբ որ ամրանան, նոր քեզ ենթարկիր ամէն փորձութեան։ Հանիր զրահդ։ խիզախ պատանի, հաւատա դու ինձ. ես պիտի կռուեմ այսօր քեզ համար, իմ բախտի համար, տրոյայի համար։

TROILUS.
Եղբայր, քո մէջ կայ գթութեան արատ, որն առիւծին է սաստիկ պատշաճում, քան տղամարդուն։

HECTOR.
Ի՞նչ արատ է դա, ազնիւ տրուլոս, ինձ յանդիմանիր։

TROILUS.
Յաճախ եմ տեսել, թէ գերի յոյներն ինչպէս են ծռել քո սրի առաջ իրենց վզները, բայց դու ասել ես՝ վեր կացէք, ապրէք։

HECTOR.
Սա խաղ է արդար։

TROILUS.
Օ՛, յիմար խաղ է, երկինքը վկայ։

HECTOR.
Ինչո՞ւ, ա՛խ, ինչո՞ւ։

TROILUS.
Այո՛, երդւում եմ ես աստուածներով, թող ճգնաւորի կարեկցութիւնը մնա մայրերին, բայց երբ զինուած ենք, թունոտ վրէժով մենք պիտի վառենք մեր սրերն անգութ եւ մղենք ի գործ։ Թող գթութիւնը խոյս տայ մեզանից։

HECTOR.
Ամօթ է, ամօթ։

TROILUS.
Օրէնքն է կռուի։

HECTOR.
Տրուլոս, այսօր չպէտք է կռուես։

TROILUS.
Իսկ ո՞վ կարող է սանձել ինձ, եղբայր, ո՛չ ճակատագիրը, ո՛չ հնազանդութիւնը, ո՛չ մարսի Ձեռքը, թէեւ կրում է ահեղ գաւազան, ո՛չ պրիամոսը, ո՛չ ծունր իջած հեկտորի մայրը՝ դառն արցունքներից աչքերը կարմրած, ո՛չ դու, իմ եղբայր, Ձեռքիդ սուրն արդար, չէք կարող շեղել իմ ճանապարհից, եւ միայն մահը ինձ պիտի սանձէ։

[Cassandra enters with Priam.]

CASSANDRA.
Օ՛, բռնիր նրան, բռնիր նրան պինդ։ Նա քո նեցուկն է, դու կորցնում ես քո յենարանը։ Եւ դու եւ քեզ հետ՝ ամբողջ տրոյան, պիտի կործանուես։

PRIAM.
Տուն վերադարձիր, իմ բարի զաւակ։ Լսիր, քո կինը երազ է տեսել, քո մայրը՝ նոյնպէս, քրոջդ սիրտը կանխազգում է, իսկ ես՝ հմայուած, ինչպէս մի գուշակ, ասում եմ այստեղ՝ օրն է չարագոյժ, տուն վերադարձիր։

HECTOR.
Օ՛, ոչ։ Էնէասն արդէն դաշտում է, բազում յոյների ես խօսք եմ տուել, եւ իմ քաջութիւնն ստիպում է ինձ այս առաւօտեան մեկնել ռազմի դաշտ։

PRIAM.
Բայց դու մի գնա։

HECTOR.
Հայր իմ, չեմ կարող իմ խօսքը դրժել, դու ճանաչում ես հնազանդութիւնս, ուրեմն, հայր իմ, թոյլ մի տար, որ ես ակնածութիւնս արատաւորեմ, թող քո օրհնանքն ու

հաւանութիւնը ինձ դաշտ ուղեկցեն, որ արգելում են այստեղ քո որդուն։

CASSANDRA.
Մի թողնիր նրան։

ANDROMACHE.
Օ՜, սիրելի հայր, մի թողնիր նրան։

HECTOR.
Դու, անդրոմաքէ, վշտացնում ես ինձ։ Ի սէր մեր սիրոյ՝ գնա այստեղից։

[Andromache exits.]

TROILUS.
Այս անչափ զգոյշ, յիմար աղջիկն է յօրինում այս չար գուշակումները։

CASSANDRA.
Օ՜, մնաս բարով, սիրելի հեկտոր։ Նայիր, ինչպէս է թալկանում հոգիդ, նայիր, ինչպէս են աչքերդ հանգչում, նայիր, ինչպէս է քո խոր վէրքերից արիւնը հոսում, լսիր, ինչպէս է տրովադան ողբում, ինչպէս է հեծծում բարի հեկուբէն, եւ անդրոմաքեն ինչպէս բարձրաձիչ իր վիշտն է լալիս, նայիր, շփոթը, մոլեգնութիւնը ու ցնորումը գրկում են իրար, ասես թէ լինեն յիմար խեղկատակ, եւ ամէնուրեք գոչում են՝ մեռա՜ւ, հեկտորը մեռա՜ւ։

TROILUS.
Բաւ է, հեռացիր։

CASSANDRA.
Դեհ, մնաս բարով, ա՜խ, ոչ, սպասիր։ Ես հրաժեշտի խօսք եմ ասում քեզ, դու խաբեցիր քեզ, խաբում ես ահա ողջ տրոյային։ [Exits.]

HECTOR.
Հայր իմ, քրոջս աղաղակները՝ չարագոյժ ու խենթ, ստիպում են քեզ, որ դու մռայլուես, բայց մտիր քաղաք ու ոգեւորիր հոգիներն անհաշտ, իսկ մենք կը գնանք դէպի ռազմի դաշտ, եւ մեր սխրանքներն՝ աստծուն արժանի, մենք քեզ կը պատմենք, երբ գիշերն իջնի։

PRIAM.
Դեհ, գնաս բարով։ Աստուած քեզ պահի։

[As Priam and Hector exit in different directions War drums sound an alarm.]

TROILUS.
Լսո՞ւմ ես, նրանք կռւում են արդէն։ Գոռոզ դիոմեդես, հաւատա, պէտք է Ձեռքս կորցնեմ կամ թեզանիքը խլեմ քեզանից։

PANDARUS.
[Entering.] Սպասիր, տէր իմ, սպասիր։

TROILUS.
Ի՞նչ կայ։

PANDARUS.
[Handing over a letter.] Ահա մի նամակ քեզ մի թշուառ աղջկանից։

TROILUS.
Տուր, ինքս կարդամ։

PANDARUS.
Հիւծախտաւոր այս քածը, իսկապէս, ինձ տանջում է։ Սրանից չպրծած՝ հիմա էլ նրա ճակատագիրն է ինձ տանջում։ Սա լինի թէ նա, մէկ է, մօտ օրերս երկուսին էլ հրաժեշտ եմ տալու։ Աչքերս արդէն ջրակալւում են, ոսկորներիս մէջ ցաւը

հանգիստ չի տալիս. չգիտեմ, թէ ինչ է լինելու։ Ի՞նչ է ասում նա։

## TROILUS.

Բառեր, լոկ բառեր, բայց ոչ սրտի խօսք։ [Tears up the letter.] Օ՜, թռիր, քամի, թռիր դէպ քամին, նրա հետ մէկտեղ պտտուիր, փոխուիր։ Սիրուս յագուրդ է տալիս բառերով։

[Troilus and Panderus exit in different directions.]

]0[

## ACT V. SCENE IV.

The plain between Troy and the Grecian Camp. Thersites enters.

## THERSITES.

Նրանք միմեանց դնգստում են։ Գնամ, մի լաւ տնտղեմ։ Այդ կեղծաւոր, զզուելի, սրիկայ դիոմեդեսը իր սաղաւարտին ամրացրել է տրոյացի կաթնակեր, անխելք անզգամի թեզանիքը։ Ես կ՝ուզէի տեսնել, թէ նրանք ինչպէս են հանդիպելու։ Ես կ՝ուզէի, որ այդ տրոյական ջահել էշը՝ սիրահարուած պոռնիկին, ետ ուղարկէր անպիտան յոյնին, թեզանիքի հետ, իր պագշոտ բոզի մօտ։ Ի միջի այլոց, այս խորամանկ սինլքորների ճարտարութիւնը՝ չոր պանիր կրծող ծերուկ նեստորը, շան ու աղուէսի խառնուրդ ուլիսը, նոյնիսկ մի ստակ չարժէ։ Նրանք, իմ խոր համոզմամբ, այդ բիճ այաքսին քսի են տուել նոյնպիսի կեղտոտ շուն աքիլլեսի վրայ։ Այժմ շուն այաքսը աւելի հպարտ է, քան աքիլլեսը։ Այաքսն այսօր չի ուզում կռուել, եւ յոյները խորամանկութեամբ կը սկսեն բղաւել բարբարոսների նման։ Բայց կամաց, ահա գալիս են թեզանիքաւորը եւ անթեզանիքաւորը։

[Troilus and Diomedes enter.]

## TROILUS.

Մի փախչիր։ Թէկուզ ստիքսը ընկնես, դարձեալ ես կը գամ։

DIOMEDES.
Իզուր ես կարծում, թէ ես փախչում եմ։ Ամբոխից հեռու՝ ես նպաստաւոր տեղ եմ որոնում։ Զգոյշ կաց, տրուլոս։

THERSITES.
Դեհ, պաշտպանիր բոզիդ, յոյն։ Դու էլ, տրոյացի, քոնինիդ։ Հէ՜յ, թեզանիք, թեզանիք։

[Troilus and Diomedes begin to fight.]

HECTOR.
[Entering.] Ո՞վ ես դու, ասա։ Արեամբ ու փառքով կարո՞ղ ես կռուել դու հեկտորի հետ։

THERSITES.
Ոչ, ոչ ես մի սինլքոր եմ, մի գծուծ չարախօս սրիկայ, մի լկտի անզգամ։

HECTOR.
Հաւատում եմ քեզ, դեհ, գնա, ապրիր։ [Exits.]

THERSITES.
Շնորհակալութիւն ասա երկնքին, որ դու հաւատացիր ինձ, բայց վախեցրիր ինձ։ Աստուած տայ՝ վիզդ պոկեն։ Ի՞նչ դարձան այս կնասէր աւազակները։ Երեւի հաշտուել են։ Ես կը ծիծաղեմ այս հրաշքի վրայ, թէ հրաշք է։ Անառակութիւնը որեւէ ձեւով խժռում է իրեն։ Գնամ, նրանց փնտրեմ։ [Exits.]

][][

ACT V. SCENE V.

Another part of the plain. Diomedes and a Servant enter leading Troilus' horse with them.

DIOMEDES.

Գնա, վերցրու տրուլոսի Ձին, եւ ակնահաճոյ այդ երիվարը տուր կրեսիդային, ասա՝ պատրաստ եմ իր գեղեցկութեանը ծառայելու։ Թող նա իմանայ, որ այն սիրատենչ տրոյացին չկայ, եւ ես եմ նրա ասպետն արժանի։

SERVANT.

Շատ բարի, տէր իմ։ [Exits with horse.]

AGAMEMNON.

[Entering.] Փութացէք։ Վայրագ պոլիդամոսը գետնեց մենոնին, եւ պոռնկորդի մարգարելոնը գերեց դորին եւ հսկայածեւ անդրիի նման կանգնել է, աւա՛ղ, տէգը շարժելով, էպիստրոպի ու ցեդեսոնի բազում ջախջախուած դիերի վրայ։ Մեր պոլիքսենէն նետահար եղաւ, վիրաւորուել է մահացու կերպով ամֆիմաչուսը, պատրոկլէսը գերուել է գուցէ կամ սպանուած է, պալադեմոնին վէրքերն են հիւծել, ահեղ հրաձիգն ահաբեկում է մեր զինուորներին։ Փութա, դիոմեդես, վերստին զօրանանք կամ կորչենք յաւէտ։

NESTOR.

[Entering.] Տար պատրոկլէսի դին աքիլլեսին, եւ թող ամօթից ծանրաշարժ այաքսն ռազմի դաշտ մեկնի։ Այնտեղ մենակ չէ մեր քաջ հեկտորը, բիւր հազարներ կան, մերթ նա իր գալաթ նժոյգն է հեծնում, մերթ թռչում ի վար՝ շարքերը ռազմի, եւ թշնամին է շնչասպառ փախչում, ինչպէս թեփամորթ Ձկանց վտառը կէտերի փսխող երախի առաջ։ Չանցած մի վայրկեան՝ իր տեղն է փոխում, եւ ծղօտագոյն յոյներն են ընկնում նրա բիրտ սրից, ինչպէս հասկերը գերանդու առաջ։ Եւ ամէնուրեք երեւում է նա, գերում, սպանում, ճարտարութիւնն է խոնարհւում նրա երկաթեայ կամքին. ինչ որ ցանկանայ, իրագործում է, եւ նրա արարքն անհնարին է թւում աշխարհին։

ULYSSES.
[Entering.] Օ՛, արիացէք, արքայորդիներ։ Մեծ աքիլլեսը՝ ասպազէն հագած, շուրթերին անէծք ու խոր հեկեկանք, ուխտել է լուծել վրէժը սրբազան։ Աւա՛ղ, վէրքերը պատրոկլէսի, միրմիդոնների բզկտուած տեսքը՝ անքիթ, անձեռք, յօշոտուած ու խեղճ, եւ ողբն հեկտորի շարժել է նրա թմրած արիւնը։ Այաքսը, կորցնելով իր բարեկամին, բերանին փրփուր, զինուած նետւում է արգանդը կռուի՝ գոչելով՝ ո՞ւր է, ո՞ւր է տրոյլոսը, որ խելագարի անլուր քաջութեամբ կեանքն է վտանգում այնպէս անզգոյշ բռնադատութեամբ եւ անբռնադատ մի զգուշութեամբ, կարծես թէ բախտը, ի հեճուկս բազում հնարանքների, նրան է տուել յաղթանակները։

AJAX.
[Entering.] վախկոտ տրոյլոս։ [Exits.]

DIOMEDES.
Այո՛, այնտեղ է։

NESTOR.
Ուրեմն, գնանք, գնանք միասին։

ACHILLES.
[Entering.] Որտե՞ղ ես, հեկտոր, դուրս եկ, մանկասպան, ցոյց տուր քո դէմքը, որտե՞ղ ես, որտե՞ղ, ես քեզ եմ փնտրում։ [Exits.]

][][

ACT V. SCENE VI.
Another part of the plain. Ajax enters.

AJAX.
Վախկոտ տրոյլոս, ցոյց տուր գլուխդ։

DIOMEDES.
[Entering.] Որտե՞ղ ես, տրուլոս։

AJAX.
Քո ինչի՞ն է պէտք։

DIOMEDES.
Ուզում եմ պատժել։

AJAX.
Եթէ լինէի ես մի զօրավար, Օ՛, աւելի շուտ քեզ կը զիջէի իշխանութիւնս, քան այդ պատիժը։ Որտե՞ղ ես, տրուլոս։

TROILUS.
[Entering.] Դաւաճան դիոմեդես, ցոյց տուր նենգ դէմքդ, կեանքդ վճարիր իմ Ձիու դիմաց։

DIOMEDES.
Ա՛խ, դու այստե՞ղ ես։

AJAX.
Սպասիր, դիոմեդես, ես պէտք է կռուեմ նրա հետ մենակ։

DIOMEDES.
Նա իմ աւարն է, չեմ ուզում լինել լոկ հանդիսատես։

TROILUS.
Դե՛հ, ի՞նչ էք կանգնել, խաբեբայ յոյներ, ահա երկուսիդ կռուի եմ կանչում։

[As they exit fighting Hector enters.]

HECTOR.
Դո՞ւ ես, տրուլոս։ Օ՜, լաւ ես կռւում, իմ կրտսեր եղբայր։

ACHILLES.
[Entering.] վերջապէս գտայ, պաշտպանուիր, հեկտոր։

HECTOR.
Նախ՝ հանգստացիր։

ACHILLES.
Ես անգոսնում եմ քո բարութիւնը, գոռոզ տրոյացի, քո բախտից ահա Ձեռքիս զէնք չկայ. իմ երկար դադարն, անհոգութիւնը բարեկամ են քեզ, բայց դու կը լսես շուտով իմ մասին, իսկ այժմ գնա. քեզ բախտն է ժպտում։ [Exits.]

HECTOR.
Դե՛հ, գնաս բարով, ինձ կը տեսնէիր աւելի առոյգ, թէ քեզ սպասէի։

[Troilus enters.]

HECTOR [cont.]
Ի՞նչ կայ, իմ եղբայր։

TROILUS.
Այաքսն է գերել մեր Էնէասին։ Ա՛խ, չեմ հաւատում։ Օ՜, ոչ։ Երդւում եմ փառաւոր երկնի մեծ կրակներով՝ ես չեմ տայ նրան, ես գերի կ՝ընկնեմ կամ Էնէասին պէտք է ազատեմ։ Օ՜, բախտ իմ դժխեմ, հոգ չէ, թէ մարտում ես այսօր ընկնեմ։

[As Troilus exits a Soldier enters dressed in shiny armor.]

HECTOR.
Կա՛ց, կա՛ց, գոռոզ յոյն, ինչպիսի՛ աւար, չես ուզո՞ւմ։ Կա՛ց, կա՛ց։ Ինձ դուր է գալիս քո ասպազէնը։ Ես պիտի պոկեմ այս ճարմանդները, սակայն չեմ տենչում նրանց տէր դառնալ։ Չե՞ս ուզում մնալ, իմ փոքրիկ գազան, փախիր, ուզում եմ քո մորթը որսալ։ [Exits.]

][][

ACT V. SCENE VII.
Another part of the plain. Achilles and Myrmidons enter.

ACHILLES.
Իմ շուրջ հաւաքուէք, իմ միրմիդոններ, լսէք, թէ ինչ եմ Ձեզ հրամայում. ինձ հետեւեցէք՝ որտեղ էլ լինեմ, բայց մի յոգնեցրէք Ձեզ հարուածներով, սպասէք, մինչեւ աչքերս գտնեն արնոտ հեկտորին, այնժամ օղակէք նրան փութօրէն եւ ի գործ դրէք Ձեր զէնքերն անգութ։ Ինձ հետեւեցէք, իմ բարեկամներ, վճռուած է, արդ. պէտք է կործանուի հեկտորը հպարտ։

[As Achilles exits Menelaus and Paris enter, fighting, they are followed by Thersites.]

THERSITES.
Եղջիւրակիրն ու եղջիւր շինողը մենամարտում են։ Հարուածիր, ցուլ։ Հարուածիր, շուն։ քսի, քսի, պարիս։ քսի, քսի, իմ երկկին ճնճղուկ։ քսի, քսի, պարիս։ ցուլը լաւ է խաղում։ Հէ՜յ, զգուշացիր եղջիւրներից։

[As Paris and Menelaus exit Margarlon enters.]

MARGARLON.
Ստրուկ, ետ դարձիր, կեանքդ պաշտպանիր։

THERSITES.
Ո՞վ ես։

MARGARLON.
Պրիամոսի խառնածին որդին։

THERSITES.
Ես էլ եմ խառնածին։ Ես սիրում եմ խառնածիններին։ Ես խառնածին եմ իմ ծնունդով, խառնածին եմ խելքով, խառնածին եմ դաստիարակութեամբ, խառնածին եմ քաջութեամբ, ամէն ինչով ապօրինի եմ։ Արջը արջի թաթ չի կծում. ինչո՞ւ խառնածինը կծի խառնածնին։ Զգոյշ, թշնամութիւնը մեզ համար խիստ կործանարար է։ Եթէ պոռնիկի որդին կռւում է պոռնիկի համար, ապա ինքն իրեն խիստ պատժում է։ Մնաս բարով, խառնածին։ [Exits.]

MARGARLON.
Գրողը քեզ տանի, վախկոտ։ [Exits.]

][][

ACT V. SCENE VIII.
Another part of the plain. Hector enter.

HECTOR.
Խիստ փտած միջուկ՝ սիրուն կեղեւով, քո գեղեցկափայլ զէնքն ու զրահը կեանքիդ գինն արժեն։ Արդ, բաւ է այսօր։ Սուր իմ, հանգիստ առ, արեան ծովի մէջ արդէն յագեցար։

[As he strips naked Achilles and Myrmidons enter.]

ACHILLES.
Այդ դո՞ւ ես, հեկտոր։ Նայիր, ինչպէս է արեւը հանգչում, ինչպէս է մռայլ գիշերն

շտապում նրա հետքերով՝ շնչահեղձ դարձած։ Արեւի աղօտ մայրամուտի հետ քո կեանքն է, հեկտոր, մեռնում առյաւէտ։

HECTOR.
Սուրդ պատեան դիր, ես անզէն եմ, յոյն։

ACHILLES.
Այդ նա է, նա է, հարուածէք իսկոյն։ Հեկտորն ընկնում է։ Այսպէս պիտ ընկնի իլիոնը քեզ հետ, այսպէս դու կ՝ընկնես, հպարտ տրովադա, այստեղ են ընկած քո ոսկորները, քո սիրտն ու ջիղը։ Գնանք, իմ քաջեր։ Պատմէք բոլորին, թէ աքիլլեսն ինչպէս սպանեց հեկտորին։

[As Achilles kills Hector War drums sound a retreat.]

ACHILLES [cont.]
Ի՞նչ է, յունական կողմն է նահանջո՞ւմ։

MYRMIDONS.
Այո՛, նրանց հետ եւ տրոյացիք։

ACHILLES.
Մռայլ գիշերը վիշապանման թեւերն է սփռում ի վերայ երկրի եւ բանակներն է միմեանցից զատում դատաւորի պէս։ Անյագուրդ սուրս, որ գրգռուած է այս համեղ խայծով, պէտք է անկաշկանդ անկողին գնա։ Սուրը պատեան է դնում։ Իմ Ձիու պոչից դիակը կապէք, ես պիտի քարշ տամ նրան դաշտով մէկ։ [Exits.]

][][

ACT V. SCENE IX.
Another part of the plain. Sound of retreat. Shouts. Agamemnon, Ajax, Menelaus, Nestor, Diomedes and the Unwashed Multitude enter, marching.

AGAMEMNON.
Այս ի՞նչ աղմուկ է։

NESTOR.
Լռէք, թմբուկներ։

[Shouting from the depth of the stage: Հեկտորը սպանուա՜ծ է։ Աքիլլէ՜ս։]

DIOMEDES.
Ամբոխն է գոչում, որ աքիլլեսի սրով է ընկել մեծն հեկտորը։

AJAX.
Եթէ այսպէս է, պէտք չէ պարծենալ, քանզի հեկտորն էլ աքիլլեսի պէս այր էր մի խիզախ։

AGAMEMNON.
Մենք համբերութեամբ առաջ ենք գնում։ Թող մի սուրհանդակ աքիլլեսին բերի մեր վրանի տակ։ Մեզ աստուածներն են պարգեւել նրա մահը բաղձալի, տրոյան մերն է։ Վերջ պատերազմին այս արիւնալի։ [Exits.]

][][

## ACT V. SCENE X.

Another part of the plain. Aeneas, Paris, Antenor and Deiphobus enter.

### AENEAS.

Հէ՜յ, կանգնէք այստեղ, դեռ դաշտի տէրն ենք, թէկուզ սովամահ, բայց պիտի մնանք ողջ գիշերն այստեղ։

### TROILUS.

[Entering.] Հեկտորը զոհուեց։

### EVERYONE.

Հեկտորը՞։ Աստուա՜ծ, աստուա՜ծ, մեզ փրկիր։

### TROILUS.

Հեկտորը զոհուեց։ Մարդասպանը, նրա դին կապած իր ձիու պոչից, գազանի նման քարշ տալով, տանում է խայտառակ դաշտով։ Մռայլուէք, երկինքներ, թող Ձեր ցասումը փութով բորբոքուի, Օ՜, դուք աստուածներ, Ձեր սուրբ բարձունքից ժպտափայլ շողեր շաղ տուէք արնոտ տրոյայի վրայ, թող Ձեր աղէտը լինի գթութիւն, մի ուշացնէք անխուսափելի մեր կործանումը։

### AENEAS.

Յուսաբեկում էք, իշխան, մեր զօրքին։

### TROILUS.

Դու, ինչպէս հարկն էր, ինձ չհասկացար. Օ՜, ես չեմ խօսում վախի, փախուստի ու մահուան մասին։ Ես կարող եմ ինձ նետել մօտալուտ վտանգների մէջ, որ ուղարկում են աստուած ու մարդիկ։ Ա՛խ, հեկտորն ընկաւ, ո՞վ պէտք է մեզնից այս գոյժը յայտնի ծեր պրիամոսին կամ հեկուբէին, նա, ով ճչացող ագռաւի նման կը թռչի տրոյա ու կը կռաւէ՝ հեկտորը ընկա՜ւ։ Բաւ է այս բառը, որ պրիամոսը վշտից քարանայ, որ աղջիկները վշտի ծով դառնան, կանայք՝ նէոբէ, իսկ պատանիներն՝ արձան սառնաշունչ։ Օ՜, այս մէկ բառից ամբողջ տրոյան կ՝ահաբեկուի։ Բայց

գնանք, գնանք։ Հեկտորն է զոհուել։ Պէտք չէ ոչ մի խօսք։ Սակայն սպասէ՛ք։ Օ՛, պիղծ վրաններ, որ փռիւգիական մեր դաշտերի մէջ Ձեր կատարներն էք ցցել հպարտօրէն, թող Ձեր տիտանը Ձեզ բարձրացնի այնպէս անյապաղ, ինչ նա է ուզում, հոգ չէ, ես պիտի Ձեր միջով անցնեմ։ Իսկ դու իմացիր, վախկոտ դրուժան, երկրի տարածքը չի կարող կիսել ատելութիւնս։ Պէտք է դեգերեմ արնոտ խղճի պէս, որ չար ոգին է ծնում խիստ արագ, ինչպէս զայրոյթը՝ խելայեղ մտքեր։ Դէպի տրովադա՛։ Վրէժն աիարկու պէտք է թաքցնի վիշտը մեր հոգու։

[As Aeneas and the Trojan army exits Panderus enters from the other side.]

PANDARUS.
Բայց դու լսիր, լսիր։

TROILUS.
Հեռացիր, միջնորդ։ Թող ամօթն յաւէտ կապուի քո կեանքին քո պիղծ անուան հետ։ [Exits.]

PANDARUS.
Հրաշալի՛ դեղ ցաւոտ ոսկորներիս։ Օ՛, աշխարհ, աշխարհ, աշխարհ, այսպէս ես արհամարհում խեղճ միջնորդներիս։ Օ՛, միջնորդներ ու դաւաճաններ, ինչպէ՛ս են Ձեզ թախանձում, երբ հարկաւոր էք, եւ ինչպէ՛ս են աղերսում։ Ինչո՞ւ են մեր աշխատանքն այսպէս սիրում եւ ինչո՞ւ են մեր դերից այսպէս խորշում։ Ի՞նչ երգ, ի՞նչ օրինակ կարող է դրան ծառայել։ Թոյլ տուէք մի րոպէ մտածել։ Միշտ ուրախ է մեղուի երգը, երբ հարուստ է լինում բերքը, հէնց որ կորցրեց մեղրն ու ոտը, չեն մօտենայ նոյնիսկ մօտը։ Բարի առեւտրականներ, որ սնւում էք մսով, գրէք այս բանը Ձեր գոյնզգոյն կերպասներին։ Ձեր մէջ միջնորդներ կը լինեն, անշուշտ, ուրեմն, լարէք խեղճիս բախտն անգութ ու թէ չէք կարող արցունքներ հեղել, ապա իմ հանդէպ դուք բարի եղէք։ Իմ գործընկերներ՝ կանգնած դռան տակ, ուզում եմ թողնել Ձեզ մի սուրբ կտակ, բայց վախենում եմ՝ կանայք զայրագին իրենց նետերը ինձ պարզեն կրկին։ Լաւ, գնամ-փնտրեմ գործիս նոր տունը, Ձեզ պիտ կտակեմ իմ մոլութիւնը։

